# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿՍՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 12 • 86




*Հանձնված է տպագրության 11.IX. 1986 թ.: Ստորագրված է տպագրության 17XI. 1986 թ.: ՎՖ 06962: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69182: Պատվեր՝ 1720: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 11.IX.1986 г. Подписано к печати 17.XI.1986 г. Формат 70×100 1/16. ВФ 06962. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69182. Заказ 1720. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Ծափիկը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ


# Մեր Ազատի արկածները

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

## Ես ու հորս ծանոթը

Ես բեռնավտոյի վարորդ եմ: Չկարողացա ուսում առնել, մի բան, որ հայրս երազում էր: Դե, ինչ կա որ, վարորդի գործն էլ գործ է: Գիշերը ցերեկ եմ անում, տունս-երեխաներիս պահում: Եթե տասից վատ եմ ապրում, տասից էլ, փառք աստծու, լավ եմ:

Բեռ եմ կրում երկաթուղու կայարանից, բերում մեր փոքրիկ քաղաքը: Կայարանը մեզնից հեռու է ընդամենը յոթանասուն կիլոմետր: Ամեն անգամ կայարանում մեկ-երկու «մուշտարի» է ճարվում: Սրանց իրենց բեռների հետ վերցնում, բերում եմ, հացի, չայ-շաքարի բանի ծախսը հանում:

Մի օր կայարանում չկարողացա ապրանք ստանալ, ասացին՝ չկա: «Մուշտարի» էլ չկար: Վատ է: Դատարկ վերադառնալն ամոթ է, պետական մեքենան պարապուրդ է տալիս, ապա նաև գոնե օրվա կերածս հացի գինը չեմ կարող հանել:

Դես նայեմ, դեն նայեմ, տեսնեմ մի մարդ տախտակ է առել, դարսել կայարանի պատի տակ ու էս կողմ-էն կողմ ընկած բեռնավտո է որոնում, որ տախտակը տանի, տեղ հասցնի: Երևում էր շատ է որոնել խեղճը, ճլորել էր, ճանճերը, որ այստեղ մորեխի պես շատ են, նրա քիթ-մռութն ուտում էին: Դատարկ, դխկդխկացող ավտոս դիտմամբ քշեցի նրա մոտով:

— Այ տղա, տախտակս չես տանի՞ մեր շենը:

Ամուր սեղմեցի արգելակը: Դե, որսն իր ոտքով է եկել: Հարցրի՝ ո՞րն է իրենց շենը: Ասաց: Նա հենց մեր քաղաքի մոտ էր, մի քիչ վերև:

— Ի՞նչ կտաս, այ հեր:

— Քսանհինգ ռուբլի:

Մտքումս պար եկա: Քիչ փող չէ: Մի



քիչ նազուտուզ արի, մի քիչ թթվեցի, թե քիչ է, բայց և համաձայնեցի:

Նայեցի, տեսա, ոնց որ էս մարդը ծանոթ է: Հա, հա՛, սա այն մարդն է, որ պատերազմից հետո, հացի պակաս տարիներին, շուտ-շուտ գալիս էր մեր տուն՝ հորս մոտ: Մի օր մածուն էր բերում մեզ համար, մի այլ օր՝ կարտոֆիլ կամ չորթան: Հայրս ու մայրս էլ նրան, իհարկե, դատարկ չէին ետ տալիս, ընկնում էին դես ու դեն, մի քիչ չայ-շաքար ճարում, տալիս նրան:

Ես տխրեցի, որ իմ «մուշտարին» հորս ծանոթը դուրս եկավ: Սրանից ո՞նց փող վերցնեմ: Բայց երբ տեսա, որ ինձ չճանաչեց (այն օրերին փոքր եմ եղել), սրտապնդվեցի: Դե, ուրեմն, քանանհինգ ռուբլու տերն եմ:

Ավտոյիս քամակը դեմ արի տախտակի կույտին: Ես ու մարդն սկսեցինք տախտակը բեռնել: Մի քիչ խիղճս հանդարտվեց: Ահա, ես իմ հոր ծանոթին օգնում եմ, նրա տախտակը ձրի բեռնելով, մի բան, որ, իհարկե, իմ պարտականությունը չէ:

Տախտակը բեռնեցինք, լարերով կապեցինք, պրծանք ու՝ հայդե դեպի տուն: Մարդուն նստեցրի կողքիս՝ խցիկում: Ինչպես տեսնում էի, նա ուրախ էր, որ գործը հաջողվել է, տախտակը տանում է տուն:

Ես սկսեցի երգել: Ես, ինչպես յոռղներն են հաստատում, լավ եմ երգում: Երգեցի սրտանց, տեսա՝ էս մարդու աչքերից գլոր-գլոր արցունքներ են թափվում:

— Ջա՜ն, բալա, ձայնիդ մատա՜ղ: Մին էլ երգի:

Կեսօրին հասանք էդ մարդու գյուղը: Ես նորից օգնեցի նրան ու տախտակը թափեցինք-պրծանք: Էս մարդու կինը տանը չէր, որ խորակ՝ կերակուր պատրաստի մեզ համար: Մարդն իր աղջկան, որ տասնվեց-տասնյոթ տարեկան կլիներ, պատվիրեց մածուն ու արաժան բերել, լավաշ հաց էլ: Դեռ նոր էի լավա՛շը պուտ արել, կոխել թանձր մածնի մեջ ուտելու, երբ հանկարծ մարդն ինձ ճանաչեց:

— Այ շոֆեր, դու ուստա Օսեփի տղան չե՞ս:

— Էն եմ,— հուսահատ պատասխանեցի ես: Երբեք սուտ խոսած չկամ:— Այո, Օսեփի տղան եմ:

— Այ, ի՜նչ լավ եղավ: Ախր հորդ հետ ախպերացած եմ: Ոսկի մարդ է ուստա Օսեփը: Դե, մածունը հացալի կեր, իշտահով կեր, քեզ մատա՜ղ:

Սրտիցս արյուն է գնում, քսանհինգ ռուբլուց զրկվեցի: Ախր ամոթ է, որ հորս հետ ախպերացած այս մարդուց փող վերցնեմ: Սկսեցի մխիթարել ինքս ինձ՝ դե, բան չկա, մածուն, արաժանը կուտեմ:

Մարդը ձեռքը տարավ գրպանը:

— Քու վարձը՝ քսանհինգ ռուբլին, ըստացիր:

Ես բռնեցի նրա ձեռքը:

— Չի հարկավոր, հորեղբայր,— մերժեցի անասելի տառապանքով, անիծելով մեր ձորերի 'սովորույթը՝ ծանոթ-բարեկամից վարձ չվերցնել: Հիմար սովո

րույթ է: Ախր ծանոթը՝ ծանոթ, բայց մարդ իր հալալ վաստակը ինչո՞ւ չստանա:

Մարդը ձեռքը գրպանից հանեց դատարկ: Կարծես իմ սիրտը հանեց կրծքիցս:

— Դե լավ,— ասաց նա:— Քո լավության տակից մի օր դուրս կգամ:— Ձայնը բարձրացրեց:— Չէ, ինչի՞ մի օր, հենց էսօր դուրս կգամ: Մեր կարտոլը քանդել ենք: Հետդ պարկից-բանից ունե՞ս:

Աչքերիս լույսը ետ եկավ: Իհարկե, մեկ չէ, ութ պարկ ունեմ, որ պահում եմ «սիդելնուս» տակ: Մեկը շատ մեծ է, դրա մեջ բուրդ են լցնում:

— Պարկ բեր,— ասաց մարդը,— կարտոլ տամ, տանես:

Վեր կացա, բրդի պարկը, որ բարակ կտավից էր, նեղ ծալծլված, հանեցի «սիդելնուս» տակից: Մարդը դա մեկնեց աղջկան.

— Այ բալա, էս պարկը տար, կարտոլ լցրու մեջը: Լիքը կլցնես:

Ծունչս տեղը եկավ, մածուն-արաժանն սկսեցի ախորժակով ուտել: Կողքի մառանից լսում էի դույլի մեջ լցվող կարտոֆիլի ձայնը: Հաշվեցի՝ էս մի դույլ, էս երկու, էս հինգ, էս տասնմեկ...

Մածնի ամանը դատարկել էի, երբ աղջիկը եկավ, հորն ասաց, թե պարկը լցրել է: Վեր կացանք, մտանք մառան: Պարկս ուռած-տռզած կանգնել էր մառանում, մեջը երևի հիսուն դույլ կարտոֆիլ, ոչ պակաս: Դա տեսնելով, մեր ծանոթի գույնը դարձավ պատի ծեփ: Ես ձեռքս մեկնեցի նրան.

— Ծեն կենաս, հորեղբայր: Ես գնացի:

Կարտոֆիլը բերի տուն: Մի ողջ ձմեռ երեխեքս կերան, բոստանում էլ քսան շարք ցանեցի, հինգ դույլ տվի հորս՝ սերմացու, չորս դույլ էլ փտեց... Բա՞...

## Մեր դասատուն, նրա հորթն ու ես

Երևի գիտեք, որ ես Ազատն եմ: Բայց, ահա, հազիվ թե գիտեք, որ մի ժամանակ ես սովորել եմ մեր գյուղի դպրոցում, նույնիսկ ավարտել յոթերորդ դասարանը:

· Մեր ուսուցիչներից մեկը, որին մենք ուղղակի Դասատու ենք ասում, խիստ բարակ, բարձրահասակ մարդ էր: Բարակ,բարձրահասակ էր, երբ ես նրա աշակերտն էի ու պատերազմ էր: Հետագայում հաստացա՞վ, թե մնաց գերանդու կոթի պես նույն բարակը, չգիտեմ:

Ազատն իր այս մի պատմությունը կիսատ թողեց, ասաց.

— Ես քեզ շատ եմ հարգում, կարծում եմ՝ դու էլ ինձ: Ուրեմն, իմ այդ ուսուցչի անունը պարզապես Դասատու գրիր: Խորհուրդ եմ տալիս խուսափես քո գրքերում որևէ մեկի իսկական անունը գրելուց: Նեղանում է մարդը, թեև նրա մասին վատ բան չես գրել: Օրինակ, դու մի տեղ գրել ես, թե այսինչը սիրահարված էր մի գեղեցիկ կնոջ, որի մարդը մի քոռ կոպեկի գին չուներ: Լավ ես արել, համարյա մարդուն անմահացրել ես: Բայց, ահա, քու այդ հերոսը դժգոհում է քեզանից: Ուրեմն նրա իսկական անունը մի գրիր, եթե Պետրոս է, Փիլիպոս դարձրու, քու ձեռքին չի՞: Այնպիսի անուն դիր վրան, որ հեռու հարևան էլ չլինի իր բուն անվան հետ:

Պատերազմ էր, հացը քաղցր, թացանն՝ աստծու արցունք: Մեր այս Դասատուն մի կով է առնում, դրա կաթնամածունով յոլա են գնում: Այն էլ ասեմ, որ նա ինձ հետ չուներ, ես նրա աչքին ոչ թե փուչ, այլ գրող էի դարձել: Ինձ կանչում էր գրատախտակի մոտ.

— Ազատ, մի դեսն արի:

Բայց դեռ գրատախտակին չհասած, բերանս բաց չարած, իմ անվան դիմաց մատյանում «2», ավելի հաճախ «1» գնահատական էր դնում, գոռում.

— Գնա տեղդ վեր ընկիր, այ ոչուփուչ:

Այսպես ոչ թե մեկ կամ տասը օր, այլ՝ ամբողջ տարին: Դպրոցը դարձավ աչքիս փուշ, Դասատուն՝ նույնպես:

Մի օր մեր տան մոտերքում նկատեցի Դասատուի երեք-չորս ամսական հորթին: Դե, հորթ է, ուրեմն՝ հորթ է: Քանի որ մեր գյուղն այն ժամանակ միայն մի ցուլ ուներ, ապա գյուղի բոլոր հորթերն իրար նման էին՝ մի քիչ սևավուն, մի քիչ կարմրին տվող սիրուն հորթեր: Մենք էլ այդ միակ ցուլից չորս հորթ ունեինք:

Դասատուի հորթը տեսա, թե չէ, խենթությունս բռնեց: Հիմա ես քեզ «2» կամ «1» ցույց կտամ, ընկեր հորթատեր: Հորթին «բիժիբիժի» անելով, ձեռքս նրան պարզելով, իբր թե աղ եմ տալիս, քաշեցի մեր կալը: Բերի, գոմի դուռը բաց արի, դրան խառնեցի մեր հորթերին, իբր թե դա էլ մերն է:— Դե, այ իմ Դասատու, հիմա գնա ծծրակդ քորիր,— նկատեցի, որ Դասատուի հորթը մեր հորթերից մի



քիչ զանազանվում է, մի քիչ ավելի սևավուն է: Մեր հորթերի ճակատներին ըսպիտակ նախշ-պիծակ կա, սրա ճակատին՝ ոչ: Բահո՜, մտածեցի, Դասատուն կգա ու կճանաչի իր հորթին: Ի՞նչ անեմ: Մտածեցի-մտածեցի ու հնարը գտա: Տետրակիցս մի չգրած թերթ պոկեցի, մկրատով կլոր կտրեցի ու թաց թրիքով թուղթը կպցրի էս հորթի ճակատին: Այսինքն՝ հորթը նաղաշ է, սպիտակ պիծակ ունի, ինչպես ունեն մեր հորթերը: Ուրեմն, սա էլ մերն է:

Գոմից դուրս եկա, որ խոտ քաղեմ, բերեմ, տամ հորթերին: Մեկ էլ՝ ըհը, Դասատուն տնկվեց առաջս:

— Ազատ, մեր հորթը տեսել չե՞ս:

— Չէ, ընկեր…,— իսկույն պատասխանեցի ես:— Չեմ տեսել:

— Հորթս կորել է,— տնքտնքաց Դասատուն,—կովն էլ հանդից եկել, հրեն մալանչ-մալանչ է գալիս: Հորթս կորել է: Ձեր հորթերն ո՞ւր են:

— Մեր գոմում,— պատասխանեցի ես:

— Կարող է մեր հորթը խառնվել է ձեր հորթերին:

— Դժվար թե,— ասացի:— Բայց թե ուզում ես, կարող ես գալ, տեսնել:

Ես մեր գոմի դուռը բաց արի: Դասատուն նայեց հորթերին, գլուխն օրորեց:

— Չէ, մեր հորթն էստեղ չի: Մեր հորթի ճակատին պիծակ չկա:

Երկու օր անվերջ Դասատուն և իր կինը իրենց հորթն էին որոնում:— Կովս կցամաքի, էհե՜յ: Հորթս կորել է, այ մարդիկ: Եկեք գտնենք:

Դասատուն մղկտում էր: Ոչ կարգին դաս էր տալիս, ոչ էլ դադար ուներ: Ախր կովը կցամաքի, տունը կքանդվի: Ես խղճացի նրան: Մեծ դասամիջոցին գնացի, նրա հորթը հանեցի մեր գոմից, տարա, թողի աղբյուրի մոտի ձորակում: Ետ եկա հևալով:

— Ընկեր Դասատու, ձեր հորթը տեսա: Հրեն, աղբյուրի ձորում:

Դասատուն մատյանը դեն գցեց, կավիճը խոթեց գրպանն ու վազեց դուրս:

Ուրախությունից ուղղակի պարում էր: Ախր, կորուստը գտավ:

Այդ օրվանից նա փոխվեց: Հենց որ ինձ կանչում էր գրատախտակի մոտ, իմ ազգանվան դիմաց «4» կամ «5» էր դնում:

## Թե ինչպես կատուն...

Մեր ազգական Միրաղենց Մելիքի գյուղը վերևի անտառի մեջ է: Մեր գյուղն էլ է բարձր տեղ, բայց անտառ չունի, սարեր են, արոտներ ու մի բարակ ջուր, որ գնում է դեպի ձորերը՝ ինքն իրեն քըչքըչալով, իր նման կապույտ երկնքի տընազն անելով: Բայց խեղճը տապ է կե-

նում, հենց որ ընկնում է մեծ գետի մեջ:
Մի օր Մելիքը եկավ մեր տուն:
— Այ Օսեփ, այ Օսեփ ախպեր, ի՞նչ կա-չկա:
— Հեչ,— երկարածորեց հայրս:— Հարսանիք ունենք, ամա արաղ չեմ ճարում:
— Բա քու տունը չե՞ն,— զարմացավ Մելիքը:— Բա ինձ ասա, էլի՞: Էս երեխադ դիր հետս, տանեմ գյուղ, քեզ համար արաղ ուղարկեմ:
Երեխան ես եմ՝ լղար ու բարակ, անունս էլ Ազատ: Եվ եթե հարցնես հորս, կասի, թե ես տասնհինգ տարեկան եմ: Նեղանում եմ, երբ ինձ «երեխա» են ասում: Ինչո՞ւ «երեխա»:
Մելիքը գիշերը մնաց մեր տանը, առավոտը թե՝ գնում եմ: Հայրս մեր տանն ու հարևանների մոտ տասներկու դատարկ շիշ գտավ, դրեց մի տոպրակի մեջ, տվեց ինձ, մեր էշն առաջս արեց, թե՝ այ բալա, Մելիքի Միրաղի հետ գնա իրենց գյուղը, արաղ բեր: Մայրս Միրաղի համար թիթեղյա վառարանի մի «արմունկ» դրեց: Մելիքը երեկոյան ասել էր, թե իրենք «փեչ» ունեն, բայց «արմունկ» չունեն, որ վառեն: Մայրս մեր ճտերից մեկն էլ բռնեց, դրեց «արմունկի» մեջ, երկու անցքերը փալասով փակեց, որ ճուտը չփախչի:
— Էս ճուտը,—ասաց Մելիքին,—քյաքլիկ աճան հավի «սորթ» ա, որ մեծանա, ամեն օր ձու ա ածելու, տար պահի:
Գնացինք՝ Մելիքն իր էշն առաջն արած, ես՝ մերը: Երբեմն նստում էի մեր էշը, որ չհոգնեմ:
Մեր գյուղի ջուրը բռնած գնացինք, հասանք գետին: Մելիքն ինձ պատվիրեց էշի ագին պինդ բռնել, որ գետն ապահով անց կենամ: Էշերը մտան գետը... Ոնց եղավ՝ Մելիքի էշը սայթաքեց, գետի մեջ տեղը պտկվեց: Նրա փալանին կապած «արմունկի» մի ծայրը բացվեց, մեջի ճուտը ընկավ գետը: Ընկավ ու գնաց՝ ջրի հետ օրորվելով: Մելիքը վազեց ճտի ետևից, բայց գետը ճտին տարավ, կորցրեց...
— Թյո՜ւ...,— իր բախտն անիծեց նա:— Ախր քյաքլիկ «սորթ» էր, է՜... Հավ կըդառնար, ձու կածեր: Էս ի՞նչ տնաքանդություն եղավ...
Ճտի վիճակը տեսնելով, ես սարսափեցի մտնել գետը: Հանկարծ գետն ինձ էլ չտանի՞: Չեմ մտնի, պրծավ գնաց: Ծառը կտրած Մելիքն ինձ շալակեց, ինձ էլ, մեր էշն էլ անցկացրեց գետը:



Գնացինք: Արմունկը դատարկ դըխկդըխկում էր էշի վրա: Մելիքը մրմռքում էր ճտի կորստից:
— Ախր դոխ էր, է՜, այ բալա: Գետը տարավ...
Հասանք նրանց գյուղը: Էշերը տեղավորեցինք, մտանք տուն: Մելիքը մի դատարկ-լպստած օթաղ ուներ միայն, հողե հատակին անհամար փոսիկներ: Մի քիչ սպասիր, հաց կերանք, ջուր խմեցինք ու պառկեցինք քնելու:
Տանը մի կատու կար, որ ասեմ մի գամփռի չափ, հավատացեք: Աչքերը դեղին ու նեղ էին, պոչը՝ երկար, լարած: Որ բերանը բաց էր անում, մլավում, կար-

ծես վագր էր փշշացնում:
Քնելուց առաջ Մելիքի կինն ամուսնուն ասաց.
— Այ հայ, կատուն տնից դուրս արի՞ր, թե ոչ:
— Հա,— պատասխանեց ամուսինը:— Դուրս արի, բա ո՞նց:
Ես զարմացա, ինչո՞ւ են այս մարդիկ իրենց կատվին գիշերը դուրս անում տնից: Գազա՞ն է, ինչ է...

Չգիտեմ, թե որքան էի քնել, մեկ էլ զգացի, որ մի ծանր բան զարնվեց գլխիս ու սկսեց գլուխս կծոտել: Վեր թռա սարսափած: Գլխիցս պոկեցի վրաս հարձակվողին ու տեսա, որ կատուն է: Դու մի ասի, երբ Մելիքը դուռը բաց է արել, որ կատվին դուրս գցի, կատուն թաքուն ներս է սողոսկել: Ես կատվին շպրտեցի, բայց նա հասցրեց մատս պինդ կծել:
Իմ գոռոցի վրա մարդ ու կին վեր թռան: Կինը ճչաց.
— Տունդ քանդվի՛, մարդ, կատուն դուրս չես արել: Կատուն Ազատին կերավ, հասի՛ր...
Երկուսով թռան մոտս, ինձ գրկեցին: Կինը ճրագ արեց: Իմ գլխից արյուն էր կաթկթում, թափվում վզիս, երեսիս: Արյունս տեսնելով՝ սարսափեցի:
— Վայ, ես մեռա՛...
Իսկ կատուն փշշացնում էր դռան մոտից:
Ինչ երկարացնեմ: Մարդ ու կին խառնձուր արեցին, դրին գլխիս վերքերին, ինձ ջուր տվին, վախս առան, հուսադրեցին: Կինը ծվծվաց.
— Այ մարդ, էդ կատուն սատկացրու, էլի՛: Էս էլ քանի ղոնաղի է վնաս տալիս: Այ խոր խորանաս դու, կատու՛...
Մարդը մի փայտ վերցրեց, դուռը բաց արեց, որ կատվին ծեծելով դուրս քշի, բայց կատուն ցատկեց բաց դռնից ու կորավ...
Այնկս մինչև լույս քունս չտարավ, վերքերս ցավում էին, մեջս կատվի տված սարսափն էր: Էլ ի՞նչ քնել:

Առավոտյան Մելիքը իմ բերած տասներկու շշերը արաղ լցրեց, խցանեց կարտոշկայի գլխիկներով, դրեց խուրջինիս մեջ, որ տանեմ: Գլուխս մռմռում էր: Դե, ջհանդամը, մտածում էի, վերք է, էլի, էսօր չէ, էգուց կլավանա:
Ես արդեն ինձ վերագտել էի, երբ հանկարծ կատուն երևաց.
— Մյաո՛ւ...

՛Պատի վրայից մի զույգ կրակի գնդեր էին հառված ինձ վրա:
— Մյաո՛ւ...
Կրակի պեծերը խրվում էին հենց կոկորդիս մեջ: Նման աչքեր, աստված հեռու տանի, թե մարդ տեսնի, սրտաճաք կլինի: Դրանց շողքերն ասես թույնի ցայտեր էին, թե մեկը կպավ ձեռքիդ, կյանքիցդ ձեռք քաշի:
— Մյաո՛ւ...
Այնպես էլ հանդարտ է այդ սպառնալի գունդը կծկվել պատի վրա: Այնպես անմեղ, կարծես հորս փափախը լինի:
Մելիքը մի երկու անգամ քացի տվեց էշին, որ տեղից պոկվի, դարձավ ինձ.
— Այ տղա, ի՞նչ ես սառած-սքառած մնացել, գնացինք, է՛...
Ես հազիվ շարժվեցի տեղիցս՝ աչքս կատվի անհեղ աչքերին, շեկ մռութին ու պոչին, որ քարերի վրա լարված օձի պես մտրակում էր չորս կողմը:
Մելիքն ինձ ու իմ էշն արած տարավ, որ գետն անցկացնի, ինձ ճանապարհի մեր տուն: Ես կպել էի ոչ այնքան Մելիքին, որի վրա այնքան էլ հույս չունեի, որքան մեր էշին: Դե, էշ ջան, ցա՛վդ տանեմ, ինձ փրկիր այս գազան կատվից:
Մենք գնում ենք, կատուն՝ մեր ետևից: Թռչում է քարից քար, ասպարեզից ասպարեզ, աչքն ինձ վրա ու այնպես է փրշշացնում, կարծես ես նրա ձագերին սպանել եմ: Այ հեյվան, քաշվի գնա, էլի: Ես քեզ ի՞նչ վատություն եմ արել, որ իմ հոգիս առնում ես:
Մելիքը հառաչեց.
— Ծմակ տեղ ենք ապրում, այ որդի: Մեր կատուն վայրի կատվի ցեղից է: Մենք մի կատու ունեինք, դա գնացել է ծմակ, ետ եկել ու էս անիծվածին ծնել: Էդ մեր հոգին ուտում է:
Հարցրի՝ ձեզ վնաս տալի՞ս է:
— Չէ: Կատուն մեզ վնաս չի տալիս: Միայն ղոնաղի վրա է հարձակվում, վախեցնում, կծում: Չեմ հասկանում, թե ինչ արարած է, ղոնաղ չի սիրում:
Մելիքն ինձ անցկացրեց գետը, ինքը վերադարձավ: Ես նրանց ասացի՝ մի քիչ էլ սպասի, թող գետից հեռանամ: Վախենում եմ կատուն գա ինձ վրա:
— Էլ մի վախենա,— ասաց նա: Կատվի վազ տալը մինչև մարագն է լինում: Մեր կատվի մանզզիլն էլ մինչև էս գետն է: Ղոնաղին ճանապարհում է մինչև գետը ու ետ գնում:

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ • ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



**ԱԼԵՔՍԱՆԴՐ ԹԱՐՎԵՐԴՅԱՆԸ** սովորում է Ն. Կ. Կրուպսկայայի անվան դպրոցի 8-րդ դասարանում: Լավ է դրսևորում իրեն հատկապես հումանիտար առարկաներից՝ գրականությունից և պատմությունից: Գրագետ է, ունի լավ տրամաբանություն, լեզվական նուրբ զգացողություն: Շատ է կարդում, սիրում է բանաստեղծություններ գրել: Ալեքսանդրը դպրոցի «Պատանի ստեղծագործողներ» խմբակի անդամ է:

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի

●●●

Ձմեռվա խաղաղ, մի պաղ լռություն
Հանդարտ իջել է արձակ դաշտերին,
Մի ճերմակ-ճերմակ սառն ամայություն
Փռվել է համայն սար ու ձորերին:

Ասես չեն եղել կանաչ դաշտերում
Աստղերի պես բյուր վառվող ծաղիկներ,
Ասես չեն եղել սար ու ձորերում
Սիրուն, երգեցիկ զմրուխտե հավքեր,
Ասես չեն եղել բարձր լեռներում
Զուլալ կարկաչով հոսող աղբյուրներ,
Ասես չեն եղել կանաչ դաշտերում
Ուրախ քրքիջով վազող առուներ:

Ձմեռվա խաղաղ, մի պաղ լռություն
Հանդարտ իջել է արձակ դաշտերին,
Մի ճերմակ-ճերմակ սառն ամայություն
Տիրել է ասես համայն աշխարհին:

●●●

Հին Թարթառի կանաչախիտ ափերին,
Այնտեղ, ուր լուսինը դառնում է ոսկի,
Այնտեղ, ուր աստղերն են փայլում մարգարիտ,
Այնտեղ, ուր արևն է շողում ադամանդ,
Այնտեղ, ուր հողերն են փխրուն, արգավանդ,
Այնտեղ, ուր ծաղկունքն է ժպտում մշտապես,
Այնտեղ, ուր ջրերն են վճիտ ու մարմանդ,
Այնտեղ, ուր երկինքն է զուլալ կապուտակ,
Մեղմիկ քնում են ձորեր, դաշտ ու հանդ,
Եվ նրանց միջին՝ մեր գյուղը հրաշք:

Աշխարհը ման գաս ու հազարերանգ
Թե որ ծաղիկներ դաշտերում տեսնես,
Թե կարկաչահոս ժիր առուների
Անուշ գլգլոց քո շուրջը լսես,
Թե բարդիների կատարն օրորող
Փափուկ զեփյուռը քեզ շոյի կամաց
Եվ սաղարթախիտ ծառ ու ծաղկունքի
Մաքուր բուրմունքը շնչես, հագենաս,
Չեն կարող դարձյալ դրանք նմանվել,
Իմ ոսկեպսակ գյուղին աննման՝
Թարթառի ափին, բաց երկնքի տակ,
Ծառ ու ծաղկի մեջ հանդարտ քուն մտած:

ԿԱՐԻՆԵ ՂԱԶԱՐՅԱՆ Արարատի շրջան, գ. Արմաշ

ԱՐՄԵՆՈՒՀԻ ՄՈՎՍԻՍՅԱՆ, 11 տ. Լենինական

ԱՐԱՄ ԱԲԱՋՅԱՆ, 9 տ. Երևան, Մ. Գորկու անվան դպրոց



ԳՐԻԳՈՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# Խեղճ Գոռիկը

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ոչինչ չէր կարողանում ժամանակին անել-վերջացնել: Պարզապես ժամանակը հերիք չէր անում: Գուցե դրանում ինքը ոչ մի մեղք չունի էլ... Որևէ մեծ գործ վերջացնելու համար նրան միշտ մի օր գոնե պակասում էր, համեմատաբար փո-

քըր գործերից՝ մի ժամ, դրանից փոքրերին՝ մի րոպե, իսկ ամենափոքրերին՝ մի վայրկյան:

Եվ ի՞նչ է այդ մի վայրկյանը՝ «մեկ» հաշվիր՝ վայրկյանը կլրանա, բայց արի տես, որ մի վայրկյանն էլ ժամանակ է:

Ահա, օրինակ, այդ մի վայրկյանն է, որ դարձավ Գորիկի այսօրվա տխրության պատճառը:

Ֆիզկուլտուրայի դասատու ընկեր Դարբինյանը վայրկյանաչափը բռնեց և ասաց.

— Այսօր մենք պետք է որոշենք, թե ով է վազքի մեր դասարանի չեմպիոնը: Թող ստարտի կանգնեն Գորիկն ու Դավիթը, որոնք մեր դասարանի ամենաարագ վազողներն են:

Դե, բոլորն էլ գիտեն, որ նա ու Դավիթը, կարելի է ասել, հավասար ուժեր են...

Վազեցին միասին, Դավիթը շուտ տեղ հասավ:

— Հարյուր մետր վազքում հաղթեց Դավիթը,— հայտարարեց ընկեր Դարբինյանը,— Գորիկը նրանից ետ մնաց ընդամենը մի վայրկյան: Ուրեմն, երկրորդ «Ա» դասարանի չեմպիոնը Դավիթն է:

Գորիկը տխրեց ու քիչ էր մնում լաց լինի:

Չեմպիոն չդառնալու պատճառով չէր, որ նա քիչ մնաց լաց լիներ (բոլորն էլ գիտեն, որ ինքն ու Դավիթը, կարելի է ասել, հավասար ուժեր են), այլ նրա համար, որ իրեն միշտ դավաճանում է ժամանակը:

Հենց այսօր առավոտյան էլ գրեթե նույն բանն ասաց մայրիկը: Միայն այն տարբերությամբ, որ այստեղ էլ Գորիկը մի վայրկյանի փոխարեն մի րոպե էր ուշացել:

Մայրիկը շտապեցնում էր, որ Գորիկը անկողնուց շուտ վեր կենա՝ հագնվի, լըվացվի, նախաճաշի, որպեսզի դպրոցից չուշանա: Ինքը, ինչ խոսք, այդ բոլորն արեց՝ հագնվեց, լվացվեց, դեռ շտապելով էլ նախաճաշեց, բայց, երբ մոր հետ տնից դուրս եկան ու այն է հասնում էին կանգառ՝ ավտոբուսը շարժվեց:

— Ա՛յ, Գորիկ, եթե մեկ րոպե անկողնուց շուտ վեր կենայիր, ավտոբուսից չէինք ուշանա,— հանդիմանեց մայրիկը:

Նույն օրը երեկոյան էլ դեռ մութը չէր ընկել՝ մայրիկն ասաց.

— Գորիկ, ժամը վեցին տուն կգաս՝ գնում ենք քեռի Վարոսենց տուն:

Ինքը խոստացավ և գնաց ընկերների հետ մի քիչ խաղալու: Չէր էլ մոռացել, որ երեկոյան գնալու են քեռի Վարոսենց հյուր, բայց երբ տուն եկավ, մայրն ասաց

— Գորիկ, դու ուղիղ մի ժամ ուշացար:

Գորիկը ուշանալու համար ներողություն խնդրեց, բայց մայրն ասաց:— Ես քեզ ներում եմ, Գոր, բայց այսօր հյուր չենք կարող գնալ, արդեն ուշ է..

Իսկ Գորիկը այնքան էր ուզում քեռոնց տուն գնալ:

Այդ էլ դեռ ոչինչ: Բա շան բնի պատմությունը: Հիմա էլ, երբ այդ հիշում է, ամոթից կաս-կարմիր է կտրում:

Ախր մի օրվա պատճառով խեղճ շունը մնաց իր հին, խարխուլ բնում... Ամեն ինչ կար՝ տախտակներ, մեխ, մուրճ, միայն պետք էր գործն սկսել: Երբ վերջապես ուզեց գործն սկսել, մայրն ասաց.

— Գոր, դու քո շան համար մի օր առաջ պետք է բուն շինեիր, հիմա արդեն ուշ է, առավոտյան սեպտեմբերի մեկն է՝ դպրոց ես գնալու:

Այդպես էլ շունը մնաց առանց բնի՝ դարձյալ ժամանակի պատճառով: Անցան ամիսներ: Հասան տարեմուտի շեմին: Տնեցիք բոլորն զբաղված էին, գործ էին անում: Մայրիկը թխվածքներ էր թըխում, հայրիկն ու քույրիկը օգնում էին նրան, սեղանը պատրաստում: Գորիկը այն է ուզում էր հեռուստացույցի առջև նստել, հայրն ասաց.

— Գորիկ, դու էլ տոնածառը զարդարիր:

— Ե՞ս,— զարմացած հարցրեց Գորիկը,— ախր ես... Հայրիկ, ես ոչ մի բան ժամանակին չեմ կարողանում անել վերջացնել: Վախենում եմ՝ հիմա էլ չըհասցնեմ՝ Նոր տարին գա ու..

— Ամեն ինչ իր ժամանակին որ սկըսես, ժամանակին էլ կվերջացնես,— ասաց հայրիկը,— դե, սկսիր, մի ուշացնի:

Դե, որ հայրիկն էր ասում՝ պետք էր գործի անցնել:

Դեռ Նոր տարվա մուտքն ազդարարող զանգերը չէին ղողանջել, Գորիկն արդեն զարդարել-վերջացրել էր տոնածառը: Բոլորը հավանեցին, իսկ մայրիկն ասաց.

— Տեսա՞ր, իսկ դու վախենում էիր: Հիմա հասկացա՞ր, որ գործը ժամանակին պետք է սկսել, որ ժամանակին էլ վերջացնես: Տարին հաջող սկսեցիր, այդպես էլ կշարունակես...

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

# Հաչոց վաճառող շունը

Քաղաքայինն
Մի անտեր շուն
Կուշտ ապրել էր
Միշտ երազում:

Ինչպես անի,
Որ իր բախտը
Մի օր բանի:

Ու մտածեց
Գիշեր-ցերեկ.
Մինչև մի օր
Գտավ մի ելք:

— Կվաճառեմ
Ես իմ հաչը,
Կվաստակեմ
Ես իմ հացը:

Եվ փողոցում
Բարձր հաչեց
Ու բոլորին
Մոտիկ կանչեց:
— Գայլահաչս եմ
Ծախում մսով,
Մարդահաչս՝
Մի ոսկորով:

Գողահաչս՝
Թարմ-թարմ հացով,
Ուրախհաչս՝
Կաթ-մածունով:

Ծիծաղեցին
Քաղաքացիք,
Կերի տեղակ
Տվին քացի:

Հաչավաճառ
Շունը անտեր
Գլուխն առավ
Փախավ հանդեր:
— Գայլահաչ ես
Վաճառում, հա՞,—
Վրա տվեց
Գայլն աժդահա:

Եկավ վերջը
Այս պատմության,
Պարզ չէ՞ վերջը
Այդպիսի շան:

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ





ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

## Հրաշալի որս

Մի առավոտ
Զենք վերցրի,
Ճնիկիս հետ
Ելա որսի։
Անցանք դաշտով
Ու անտառով,
Բարձր սարով,
Մութ-մութ ձորով։
Լորին ասինք՝
Բարև, այ լոր,
Գայլից խոնարհ
Ողջույն առանք,
Բադերի հետ
Օրոր-շորոր
Ջրուցելով
Իջանք գետափ,
Գորտերի հետ
Միծաղեցինք,
Թավալվեցինք
Եղեգնուտում,
Նապաստակին
Աչքով արինք,—
Այծյամներին
Հարցրինք՝ ո՞նց եք,
Սկյուռիկից
Մենք խնդրեցինք
Մի քիչ կաղին,
Հաղարջենուց՝
Մի բուռ հաղարջ։
Ճնիկիս հետ
Անուշ արինք՝
Հոգնած նստած
Մի մեծ սարի։
Մեկ էլ՝ օդում
Մի ձայն առանք,
Ճայթոց, ղժժոց,
Տրաք-տրաք…
Հրացանս
Ցած բերեցի
Ու չոթ անգամ
Կրակեցի։
Ինչ խփեցի,
Որ իմանա՞ք…
Որսագողի
Յոթ զույգ գնդակ…

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

## Զարն ու բարին

Անտառում ծեր,
Հնամենի
Ապրում էր մեր
Ոզնին բարի։
Փոքր էր, սակայն,
Ազնիվ ու պարզ,
Ամեն մեկին
Ծուռ հարեհաս։
Նեղն ընկածին,
Տկարներին,
Ինչով ասես
Օգնում էր նա,
Եվ անտառում՝
Մոտ ու հեռու,
Թնդում էր մեծ
Փառքը նրա։
Զարմանում էր
Գայլը իր մեջ.
«— Ես շատ ուժեղ,
Իսկ ոզնին՝ խեղճ,
Բայց ինչո՞ւ են
Ողջ անտառում
Ինձ թողնելով
Նրան սիրում»։
Ինչ իմանար
Գայլն ամեհի,
Որ ով փոքր է,
Սակայն, բարի—
Ա՛յ, հենց նա է
Աշխարհին պետք,
Ոչ թե՝ ով, որ
Ուժեղ է շատ,
Բայց չար ու նենգ։

ԶԱՎԵՆ ԲԵԿՅԱՆ

## Սիրամարգը

Օ՛, տեսեք ինչ
հսկա վարդ է,
Առնենք, տանենք
մանկապարտեզ…

Բայց չէ, ի՞նչ վարդ,
շարժվեց անա։
Զարմանք բան է,—
այսպես էլ հա՞վք…

Թռչուն չէ սա,
հուր ու բոց է։
Պոչն էլ ասես
հովանոց է։

… Մի օր, երբ նա
երկինք ճախրեց՝
ծիածանի
մեջ թաթախվեց։—

Եվ վար իջավ
նախշած, սիրուն՝
հազարագույն
ու զարդարուն…





ԱՐԱՄ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# Ճիպուկ կրակոց

Նկարը՝ ԳՐԻՇԱ ԹՈՐՈՍՅԱՆԻ



Ձյունը գալիս էր ու գալիս, թափվում էր անկանգ, ասես ոչ ձմեռ էր եղել, ոչ առուների խոխոջ, թափվում էր՝ հաշվի չառնելով, որ Կախականջը պատրաստվում է ծննդաբերելու, համոզված, որ կերի պակաս չի ունենալու, որ իրենն են հեղեղատի խոտն ու ծաղիկը, զույլ առուն՝ Դևնոցի մամռոտ պատերից սկիզբ առնող: Բույնը լքված քարհանքի մոտ էր լինելու, արդեն աչքադրել էր, մասրենու թփերով պատսպարված խորշում, ուր չոր էր, ողողման վտանգից հեռու, եթե անձրև գար, եթե նույնիսկ վարարեր գետակը:

Սակայն... անժամանակ եկած ձյունը նրա հաշիվները խառնեց:

Մացառների մեջ խորանալ չէր համարձակվում, թեև խորքերում գրեթե ձյուն չկար, գայթակղիչ փայլ ունեին թափված մասուրներն ու հաստ շերտով գետին բռնած խաշամը: Նա գիտեր կոնաձև փշերի զորությունը. ախր կեռված ականջը չմոռացվող դաս էր:

... Գամփռը քարափի գլխին իրեն ուտում էր, լեզուն դուրս գցած գնում-գալիս, կիրճ տանող ուղի փնտրում: Ինքը լեղաճաք դիմեց քարհանքի կողմը, սակայն կենճամփին տեսավ ընդառաջ եկող ահարկու գազանին և մխրճվեց մասրուտը: Ասեղներն սանրեցին մեջքը, մի քիչ տաքացավ՝ փույթ չէր, մորթու մասին հետո կհոգար:

Շունը հասավ, զարկվեց մացառուտին, փորձեց սողոսկել: Մի մետրի չափ տարածություն էր բաժանում: Ատամների կափկափյունը, հևոցը, վայրի հայացքը... Նապաստակը նիստ ու մեռ սպասում էր վախճանին: Հազիվ շնչում էր: Արյան հոտից, մասրենու ճանկերում մնացած մորթու ծըվենների տեսքից, իր մոտիկությունից նույնպես գամփռը դիվահար եղավ: Մոլեգին հաչում էր, կրակ կտրած պտտվում թփուտի շուրջը: Հովիվը վերևից կանչում էր: Բայց նա մոռացել էր իր նախահոր երդումը մարդուն: Ի վերջո շունը հեռացավ՝ պոչը ցից:

Հետո մի շաբաթ ձախ ականջն այրվում էր, ապա ցավը անցավ, բայց այն այդպես էլ ջարդված ցողունի պես մնաց կախ:

Կախականջը մոտաբերեց Դևնոցը: Այնտեղ տաք է, քամուց պատսպարված, իջնող ձյունը դժվար թե աղբյուրի շուրջն աճած կանաչը ծածկած լիներ: Հեչ որ չէ՝ պատերի մամուռը կար ու կար: Մինչև Դևնոց կլիներ հարյուր-հարյուր հիսուն քայլ: Եթե եղանակն ուրիշ լիներ, Կախականջը տարածությունը կանցներ մեկ-երկու րոպեում, սակայն հիմա... Ոչ թե գնում, այլ վարում էր ձյունը, ետևից բացվածը ոչ թե ոտնահետք էր, այլ ակոս, միայն թե ոչ ուղիղ՝ ինչպես արտում է: Ծանրացած փորը մի կողմից էր խանգարում, փափուկ ձյունը՝ մյուս: Միակ սփոփիչն այն էր, որ չէր հասցրել փոխել մորթու գույնը և նկատվելու վտանգ չըկար, եթե, իհարկե, գողտուկ չմոտենային:

Հասնելով ժայռին՝ Կախականջը քայլերը դանդաղեցրեց: Դևնոցի պատերը վերից վար ծեփված էին ձյունով, ջրի չոռոցը խլացել էր: Մամուռին հասնելու համար նա շրջանցեց Մեծ քարը: Զնայած ձյան առատությանը, մեկ-երկու քայլ հետո առջևի թաթիկները թրջվեցին, քիչ մնաց շրմփար ջուրը, ու նա ետ-ետ գընաց. անհույս գործ էր:

Գոնե ձյունը քիչ լիներ, թաթերով ետ կտար, կհասներ անցյալ տարվա խոտին, բանջարանոցները կմտներ: Թեկուզև սևացած՝ կաղամբակոթն ու ցրտակեր կարտոֆիլը չեղածից լավ են: Իսկ եթե շրջանցի ֆերմա՞ն: Դժվարը խոտի դեզերին հասնելն է՝ կեր, որքան ուզում ես: Ժամանակին իր մայրն է իրեն սովորեցրել ճամփան: Գետի ուղղությամբ կիջնի Զոռիկի մոտ, երեխաների բացած նեղլիկ կածանով կելնի Աղբյուրի թաղն ու առուն բռնած կգնա մինչև ֆերմաները: Ճանապարհի ամենավտանգավոր հատվածն այդտեղ է: Թե շներն հոտն առան, վերջ. ավելի լավ է կորնգանի հյութեղ խրձերը մտքից քշելով՝ փախչի, ազատի գլուխը: Նախանցյալ տարի մայրն ու եղբայրներից երկուսը նրանց բաժին դարձան: Ֆերմայից խոտանոց տանող ամենակարճ ճամփան ծիրանուտով է անցնում: Դըժվար էլ չէ, Ծարան քարերի մոտ պիտի միայն հատի ջուրը: Նույն՝ Պոչիկ ձորի գետակն է՝ արդեն հարթավայր իջած: Թե սառած չեղավ, ստիպված է ճանապարհով գնալ, անցնել կամրջով: Վերջին մետրերն աչքերը փակ էլ կանցնի...

Գոմերն անցնելուց հետո Կախականջը դուրս եկավ խճուղի, ուր ձյունը համեմատաբար պինդ էր, քայլելը՝ դյուրին: Քիչ անց պարզորոշ ուրվագծվեցին ծիրանենիների բները, խոտնոցի պարիսպն ու դեզերը: Երևում էր՝ մեքենաներ էին անցուդարձ արել, հետո ձյունը մասամբ ծածկել էր նրանց հետքերը: Դողերի դաջվածքը կամրջից թեքվում էր խոտանոց:

Հասնելով դարպասին՝ նա կանգ առավ, ականջ դրեց: Ոչ մի շշուկ, եթե չըհաշվենք գյուղի մյուս ծայրից հասնող շնահաչը, որից վախենալ, անշուշտ, չարժեր: Միակ կասկածելին ոտնահետքերն էին, հազիվ ընկալելի մարդահոտը, որ ավելի արևածաղկի սերմի կճեպներից էր գալիս: Հավանաբար մի ժամ առաջ են եղել դեզնոցում, որոշեց Կախականջը: Մեկը ետևից ինչ-որ բան էր քարշ տվել, նման հարևան Տերտերի ձորի աղվեսին, որն իրեն հետապնդողին մոլորեցնելու համար պոչով ավլում է հետքը: Սատանա, կարծում է կխաբվի:

Եթե քաղցը, առողջ ձագուկներ ունենալու բնազդը չլինեին, նա ետ կդառնար, բայց հիմա՝ այսքան ճանապարհ կտրելուց հետո... Կախականջը մի անգամ էլ դիտեց չորս բոլորը և, կասկածելի ուրիշ ոչինչ չգտնելով, նապաստակային մանրիկ ցատկերով առաջացավ: Մի քանի վարանոտ քայլ էր անում, կանգնում էր, վարանքի մեջ ուզում ետ դառնալ, սակայն ծղոտի կիտուկը ձգում-կանչում էր, ու նա աչքը չկտրելով դիմացը հըսկայորեն ցցուն բարդոցից՝ սկսեց ցատկ ցատկի ետևից անել, այլևս անզգույշ:

Արդեն քիչ էր մնում, երևի հիսուն մետրի չափ, երբ դեզի մեջ շարժում նըկատեց, ավելի շուտ՝ ականջը շշուկն որսաց: Կամեցավ ետ դառնալ, սակայն աչքերի առաջ ինչ-որ բան փայլատակեց, որին հետևեց ճայթյուն, և մի սոսկալի ուժ նրան գետնից կտրելով, շպրտեց ձյուների մեջ: Զհասկանալով կատարվածը՝ փորձեց ոտքի ելնել, բայց չկարողացավ, ուժ առնելու համար ուզեց օդ ներս քաշել, սակայն՝ անօգուտ: Այդ պահին էլ, արդեն մշուշի մեջ, տեսավ իր կողմը վազող տղաներին... Չլինի՞ գալիս են օգնելու..

Առավել զարմանալին, սակայն, ոչ թե հանկարծաբար հայտնված մարդիկ էին, այլ այն, որ ոչ մի ոտնաձայն, բացարձակ ոչ մի, չէր առնում: Լուռ, սոսկալի լուռ էր շուրջը և խավար: Անգամ ձյունն էր սև, և արգանդում խփոց չկար:

Դա իր վերջն էր:

# Ուրա՞խ, թե՞ տխուր միջադեպ

Մեր ջոկատում վերջերս մի փոքրիկ միջադեպ եղավ. իմ դասընկերուհիներից մեկն ինձ վիրավորեց:

Աղջկա մայրը, որ նաև մեր ուսուցչուհին է, ցանկանում էր պարզել միջադեպը և պատժել մեղավորին: Այստեղ էլ կատարվեց թե՛ տհաճ, թե՛ հաճելի դեպքը:

Երկու ընկերուհիներս (կներեք, որ անունները չեմ գրում), որոնք ներկա էին, հրաժարվեցին պատմել, իսկ ուսուցչուհին, բնական է, չէր կախելու մեզ, նա պարզապես ուզում էր իմանալ, թե ով է մեղավորը: Եվ գուցե նրան էլ վատություն պեցին, նա գուցե ուզում էր ճանաչել իր աղջկան:

Անսպասելիորեն վենին միջամտեց մեր դասարանի Անին: Ես իրեն գիտեի որպես գերազանցիկ աշակերտուհի, որ միայն դասերն է սովորում:

Նա պատմեց իրողությունը և էլի շատ անարդարություններ...

Հիմա չկարծեք, որ ես Անիին գովում եմ ինձ պաշտպանելու համար, ոչ, նա պարզապես ասաց ճշմարտությունը, այն, ինչ մտածում էր: Ինձ շատ ուրախացրեց նրա ազնվությունն ու համարձակությունը, որն հաճախ պակասում է հենց նաև ինձ: Հիմա ես նույնիսկ ներքուստ ուրախ եմ այդ տհաճ միջադեպի համար: Դա առիթ դարձավ, որ ես ճանաչեի Անիին:

ԱՍՐՅԱՆ ԿԱՐԻՆԵ
Երևան, № 78 միջն. դպրոց, 5-րդ դաս.





# ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ

## Արա Առաջինից հետո

Արա I-ից հետո նրա որդին՝ Սարդուր II-ը, և թոռը՝ Ռուշա (Հոռշա) I-ը, մեծ ջանքեր էին գործադրում հայոց միացյալ թագավորությունը պահպանելու համար:

Սարդուր II-ը թագավորել է մ. թ. ա. 764—735 թվականներին: Նրա թագավորության ժամանակ Մենուայի և Արայի կողմից միավորված հայ իշխաններից մի քանիսը և թագավորի մի քանի կառավարիչներ ապստամբում են Սարդուրի դեմ: Հայոց թագավորը ճնշում է ապստամբությունները, և իշխանները ու կառավարիչները թագավորությանը տալիք տուրքերը վճարում են ու հնազանդություն հայտնում:

Սարդուր II-ն իր զորքով շրջագայություն է անում Հայքի այն մասերում, որոնց ղեկավարները փորձում էին անհնազանդ լինել: Նա շարժվելով դեպի Արևմուտք՝ հասավ Ծոփք, ապա մինչև Փոքր Հայքի Մալաթիա (Մելիտեա) քաղաքը և ավերեց այն: Մալաթիայի տիրակալը միանձնյա թագավոր լինելու հակումներ ուներ, նաև դրդում էր հարևան Ծոփքի իշխաններին անջատվել: Սարդուրը հնազանդեցնում է նրանց, բայց և հանցավորներին ներում: Նա կրկին լինում է Սասունում (Ուրմե-Շուբրիա), խաղաղեցնում այնտեղի անհանգիստ հայ իշխաններին: Ապա իր իշխանությունն ամրապնդում է Շիրակում, Աբեղյանքում, Շատիրավանում և Ուրմիո լճի մոտ հայկական այլ բնակավայրերում: Նվաճում է Պուլուադի երկիրն Ատրպատականում: Շարժվելով դեպի հյուսիս՝ Տայքով հասնում է Կողքիս (Կոլխիդա) երկիրն, որը Սև ծովի ափին էր: Գրավում է այդ երկիրը:

Սարդուր II-ն արշավում է նաև դեպի Միջագետք ու հասնում մինչև երկու գետերի՝ Տիգրիսի ու Եփրատի հովիտները, այսինքն՝ մոտենում է բուն Ասորեստանին:

Արա I-ի հաստատած միացյալ պետությունը նրա որդին ոչ միայն ամրապնդեց, այլև ընդլայնեց:

Բայց այդ ժամանակներում Ասորեստանում իշխող Թիգլաթպալասար III թագավորը, որ վերականգնել էր իր երկրի վաղեմի հզորությունը, մ. թ. ա. 743 թվականին ճակատամարտ է տալիս Սարդուրի զորքերի դեմ: Թեև



*Հայ իշխանի դամբարան,*
*մ. թ. ա. 8-րդ դար, հայտնաբերվել է Երևանում։*

հայ թագավորի զորքերի կազմում կային նաև դաշնակից որոշ երկրների զորաբաժիններ, բայց հայկական բանակները չեն կարողանում ընկճել ասորեստանյան նորակազմ զորքի դիմադրությունը: Հայոց Կեմախ (Կամախու) գավառում հայկական զորքերը պարտվում են, Սարդուր II-ը մի կերպ կարողանում է փախչելով փրկվել: Թիգլաթպալասարը գրել է. «Սարդուրը իր կյանքը փրկելու համար գիշերով փախավ... Ես նրան հետապնդեցի մինչև Եփրատի կամուրջը, նրա երկրի սահմանը: Իմ ձեռքն անցան նրա թա-



Երևան (Էրեբունի) բերդաքաղաքի ավերակները:

գավորական դեսպակը (շքեղ պատգարակը), կնիքը, որը նա կրում էր իր վզին, մատանիների հետ, նրա արքայական մարտակառքը, ձիեր, ջորիներ, անհամար զինվորներ, նրանց մարտակառքերը»: Թիգլաթպալասարը գրել է նաև. «Ես լեռնային ձորերը լցրեցի նրանց դիակներով... ես իմ ձեռքը վերցրի 72 հազար 950 մարդ իրենց ունեցվածքով»:

Թեև դարձյալ մեզ արդեն ծանոթ գոռոզ ոճն է՝ չափազանցումներով, բայց պարզ է, որ Ասորեստանի դեմ Արա I-ի տարած բազմաթիվ փայլուն հաղթանակներից հետո այս անգամ, նրա որդու օրոք, հայերը պարտվել են:

Հայոց թագավորը պատսպարվում է Վանտոսպի իր ամրոցում: Թիգլաթպալասարը գալիս, պաշարում է քաղաքը, բայց չի կարողանում գրավել: Կողոպտում է շրջակա վայրերը, արշավում դեպի Արարատի թագավորության այլ գավառներ: Այսպիսի պարտություն հայերը վաղուց չէին տեսել:

Սակայն սա վերջնական պարտություն չէր, Սարդուր II-ը վերակառուցում է ավերված վայրերը, նոր զորաբանակ կազմում: Ասորեստանը ստիպված է լինում նոր արշավ կատարել Հայքի դեմ, դա մ. թ. ա. 735 թվականն էր: Ճակատամարտերից մեկում հայոց թագավորը զոհվում է:

Նույն թվականին հայոց գահ է բարձրանում Սարդուր II-ի որդի Ռուշա (Հռոշա) I թագավորը: Նա նախ ուժեղացնում է բանակը, գավառների մի շարք կառավարիչների, որոնց կասկածում էր դավաճանության մեջ, փոխարինում է հավատարիմ մարդկանցով:

Ռուշա I-ը ամեն կերպ աշխատում էր լավ հարաբերություններ պահպանել իր հարավային հարևանի՝ Ասորեստանի հետ, որը գնալով ավելի ու ավելի էր հզորանում: Դա Ռուշային ինչ-որ ժամանակ հաջողվում էր: Խաղաղ տարիները հայոց թագավորն օգտագործում է շինարարական աշխատանքներ կատարելու համար:

Նա տաճարներ է կառուցում հայերի պաշտամունքային կենտրոնում՝ Արդինիում, ամրոցներ է կառուցում Սևանա լճի ափերին:

Ռուշա I-ը նույնպես քուրմ էր: Նա շատ մարդկանց հետ մեծ ուխտագնացություն է կատարում դեպի Արդինի, Հայկի տաճարը: Զոհեր է մատուցում, հանդեսներ կազմակերպում, տեղի ժողովրդի համար մեծ հյուրասիրություններ անում: Այս ամենի մասին Ռուշան փորագրել է տալիս ասուրաքաբելերեն և նորխուռիերեն երկլեզվյան մեծ արձանագրություն (գտնվում է Թոփուզավա կոչված վայրում):

Արարատի հայոց թագավորության հզորությունը սկսում է վերականգնվել: Սակայն շուտով վրա է հասնում մի նոր աղետ:

Մ. թ. ա. 722 թ. Ասորեստանում գահ է բարձրանում Սարգոն II-ը, որ եղավ ահեղ և դաժան թագավոր: Նա նախ իր լրտեսներով լցրեց Հայքը: Նրա այդ լրտեսները իրենց նամակներով թագավորին հաղորդում էին Արարատի թագավորության մեջ տեղի ունեցող դեպքերը: Նրանք զանազան ձևերով համոզում էին Արարատի թագավորության կառավարիչներին դավաճանել ու անցնել Ասորեստանի կողմը:

Ռուշան հակամիջոցներ է ձեռնարկում: Մի շարք դավաճանների բռնում է, նրանց փոխարեն հավատարիմ մարդկանց նշանակում, ամրացնում է բանակը:

Մ. թ. ա. 714 թվականին, Ռուշա I-ի թագավորության նախավերջին տարում, Սարգոն II-ը հսկայական զորքով արշավեց Արարատի թագավորության վրա: Ասորեստանցիները Հայք մտան, ասպատակեցին երկիրը, ավերեցին, այրեցին շատ բնակավայրեր, մեծ կողոպուտ տարան Ասորեստան:

Սարգոն II-ի թողած սեպագիր արձանագրություններից իմանում ենք, որ նա կողոպտել է նաև Արդինիում գտնվող Հայկի տաճարը և Ասորեստան է տարել տաճարի ոսկյա, արծաթյա, փղոսկրյա իրերը, Մենուա, Արա I և Ռուշա I թագավորների բրոնզե արձանները:

Սարգոն II-ը Ասորեստանի իր պալատի սրահներում, պատերի վրա բարձրաքանդակներ է փակցնում: Նրանցում պատկերված են Սարգոնի արշավանքը Հայք: Բարձրաքանդակներից մեկում մենք տեսնում ենք Արդինիի՝ Հայկ աստծու տաճարի կողոպուտը: Այդ պատկերը այսօր մեզ ներկայացնում է այն հին ժամանակների հայկական ճարտարապետության մի հրաշալի նմուշ: Քարից կառուցված տաճարը սյունազարդ է (6 սյուն), որոնց վրա է եռանկյունի տանիքը, գագաթին Հայկի խորհրդանիշն է՝ նիզակաձև տերևներ, որպիսիք կան նաև մուտքի երկու կողմում:

Արդինին կողոպտելով՝ Սարգոն II-ն այն կցեց Ասորեստանին: Սա մեծ հարված էր հայերի և հայոց թագավոր Ռուշա I-ի համար: Եվ, ըստ Սարգոնի թողած սեպագրերի, Ռուշան չդիմանալով մեծ կորստին՝ վշտից ինքնասպան է եղել:

Մ. թ. ա. 713 թվականին գահ բարձրացավ Արա II-ը, որը նորից ամրապնդեց Արարատի հայոց թագավորության դիրքերը:

(շարունակելի)





# Երկրագիտական թանգարան Գորիսում

Այս թանգարանում կարելի է ճամփորդել հնադարից մինչև մեր օրերը: Առաջին ցուցանմուշները ժայռապատկերներ են՝ նկարներով գրություններ, որ գտնվել են Սիսիանի շրջանի Ուխտասար սարում: Մեկը որսի տեսարան է պատկերում, հաջորդը՝ որսից հետո անցկացվող տոնակատարություն. պարում են, մրցում, մյուսն էլ պատմում է որսի փոխադրման մասին: Բրոնզից պատրաստված որսորդական գործիքները 3500 տարեկան են՝ մ. թ. ա. 14-րդ դար: Արևի պատկերը կրող քարը բոլորիս հայտնի արևի ժամացույցն է, մեջտեղում պակասում է միայն ստվերը գծող ձողը, որով և օրվա պահն էին որոշում: Ահա երկանքի նախատիպը՝ աղորիքը, երկարուկ, տափակ մի սալ, վրան շրփման համար ավելի փոքր մեկ ուրիշ սալ է դրված: Աղը լցրել են մեծ սալի վրա և փոքրով տրորել, մանրել: Թանգարաններում հաճախ ենք տեսել եղջյուրներով գավաթներ, բայց այստեղ կավե գավաթներ կան՝ պատրաստված... ճտքավոր կոշիկների տեսքով, (մ. թ. ա. 2—1-ին հազարամյակ): Իր մշակման բարձր կատարելությամբ զարմանք է հարուցում առյուծի բրոնզե արձանը (մ. թ. ա. 7—6-րդ դար) գտնվել է Սյունիք գյուղում: Դուք, անշուշտ, լսած կլինեք, թե ինչպես են միսը ղաուրմա դնում կավե ամանների մեջ, որի շնորհիվ այն ամիսներ շարունակ պահպանվում է, չի փչանում: Կավե մեծ կարասների մեջ, որպես ձմռան պաշար, պահել են նաև մեղրով մածուն: Կարասները պատկանում են մեր թվարկության 2—3-րդ դարերին: Իսկ յուղի և պանրի կարասները կարելի էր տեղավորել խուրջինի մեջ և ձիով կամ էշով տեղափոխել: Տաթևի վանքի վանահոր գահաթոռը 300 տարեկան է և դեռևս առողջ ու ամուր տեսք ունի՝ պատրաստված է ընկույզի փայտից: Տաթևին վերաբերվող ցուցանմուշների շարքը լրացնում են Տաթևից բերված խաչքարն ու հայ փիլիսոփա, մանկավարժ, տնտեսագետ և աստվածաբան Գրիգոր Տաթևացու մեծադիր լուսանկարը:

Զանգեզուրցու կյանքին ու ապրելակերպին թանգարանում նվիրված է մի անկյուն, որ կոչվում է զանգեզուրյան օջախ: Թոնրի մոտ կինը հաց է թխում, ամուսինը չիբուխը ձեռքին նստած է թախտին: Մանեկեններ են, և այնքան արվեստով պատրաստված, որ առաջին հայացքից շփոթվում ես, թվում է՝ հենց հիմա նրանք կխոսեն, կպատասխանեն: Տան շեմին արորն է՝ իր լծասարքով, ներսում խնամքով շարված իրերն են՝ սանդերք, ճախարակ, երկանք, սնդուկ, խուրջին, գորգ գործելու դազգահ, խնոցի և այլն:

Անդրանիկ զորավարի և այն տան լուսանկարները, որտեղ ապրել է ժողովրդի սիրելի հերոսը, պատմում են, որ 1919—20 թվականներին Անդրանիկը Զանգեզուրը պաշտպանել է թուրքերից: Թանգարանի մի զգալի մասն էլ վերաբերվում է սովետական շրջանին: Այստեղ ցուցանմուշների մեծ մասը լուսանկարներ են: Պատմում են Զանգեզուրի կուսակցական կազմակերպության և կոմերիտմիության սկզբնավորման ու գործունեության, ապա և հետագա տարիների ձեռքբերումների մասին:

Մ. ՈՍԿԱՆՅԱՆ



# «...ԻՄԱՍՏ ՉԷՆԱ ՀԱՆՃԱՐՈՅ»

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## Շիրակացի

Նա ասում էր.

— Լուսինը սեղմ, կարծր, մաքուր, գընդաձև մարմին է, չունի իր բնական լույսը, այն միջնորդաբար ստանում է Արեգակից:

Ասում էր շատ վաղուց, շատ հարյուրամյակներ առաջ:

Իսկ մարդիկ առաջին անգամ Լուսինն աստղադիտակով նայեցին նրա ծնունդից հազար տարի անց: Եվ Լուսնի վրա տեսան լեռներ ու ձորեր, հովիտներ ու խառնարաններ, մակերևութային բազմաթիվ այլ գոյացություններ: Հետագայում խառնարաններն սկսեցին անվանվել աշխարհահռչակ գիտնականների անուններով: Ապա եղավ մեր՝ քսաներորդ դարը, և միջմոլորակային ավտոմատ կայանները լուսանկարեցին նաև Լուսնի հակառակ երեսը, որ մենք երբեք չենք տեսնում: Անուններ ստացան նաև այդ կողմի խառնարանները: Դրանցից մեկը 1984 թվականից Միջազգային Աստղագիտական Միության որոշմամբ կոչվում է Անանիա Շիրակացի...

Ընդհանրապես աշխարհում ամեն ինչ իր սկիզբն ունի: Եվ նույնիսկ սկիզբներն իրենց սկիզբն ունեն: Այդ ճշմարտությունը զարգացող կյանքի հիմքերից մեկն է: Շիրակացին մեր ժողովրդի բնագիտական մտածողության սկիզբներից մեկն է, որ զգալի հետք է թողել նրա ողջ հետագա պատմության վրա: Շիրակացու գիտական հայացքներն ու համոզմունքները ձևավորվել են հին աշխարհի, հիմնականում հունական գիտության հիմքի վրա, որին նա հրաշալի տեղյակ էր, որից կարողացել էր քննադատորեն ընտրել ու պաշտպանել իրեն առավել հարազատ դրույթները:

Սակայն բնագետի ու մտածողի ձևավորումը դատարկ տեղում չի կատարվում: Այն հիմնվում է մանկության, ուսումնառության տարիների, իսկ դրանից առաջ՝ նաև ժողովրդի պատմության վրա: Եվ, ուրեմն, պետք է հիշել, որ 387 թվականին Հայաստանը կիսվել էր Պարսկաստանի ու Բյուզանդիայի միջև: Հայոց աշխարհը երկատվել էր Արևելյանի ու Արևմտյանի և կորցրել իր քաղաքական անկախությունը: Ահա, այդ օրհասական ժամանակաշրջանում Մեսրոպ Մաշտոցն իր ժողովրդին գոյատևելու անգնահատելի զենք էր տվել՝ Հայոց Այբուբենը: Եվ անշուշտ, պատահական չէր, որ հենց այդ ժամանակ սկսեցին հայերեն ու հայատառ թարգմանություններ ստանալ հին աշխարհի գիտության խոշորագույն նվաճումները...

Շիրակացին ծնվեց Այբուբենի ծնունդից մոտավորապես երկու դար հետո, յոթերորդ դարի սկզբներին: Ճշգրիտ թվականը հայտնի չէ: Շատ տարիներ անց, երբ նա դարձավ մեծանուն գիտնական Անանիա Շիրակացի և բազմաթիվ աշխատություններ գրելուց հետո իրավունք համարեց նաև «Ինքնակենսագրություն» կտակել հաջորդ սերունդներին, այսպես սկըսեց այն. «Ես, Անանիա Շիրակացի, Անանիա գյուղից, որ յուրացրի մեր՝ Հայոց դպրությունը և հմտացա աստվածաշունչ գրքերին...»: Թե որտեղ է նախնական

կրթություն ստացել, նա չի գրում։ Պատմաբանները ենթադրում են, որ սկզբում սովորել է հայրենիքում, ամենայն հավանականությամբ այն ժամանակներում բավականին հայտնի կրթական կենտրոն հանդիսացող Դպրեվանքում։ Դա սկզբում, իսկ հետո՞...։

— Հույժ սիրելով համարողության արվեստը, խորհեցի, թե առանց թվերի ոչինչ չի հիմնավորվում՝ մայր համարեցի այն բոլոր ուսմանց։ Եվ քանի որ Հայոց մեր աշխարհում չկար այնպիսի մեկը, որ տիրապետեր իմաստությանը, և ոչ էլ նույնիսկ որևէ տեղ գիտական գրքեր էին ճարվում, ուստի մեկնեցի Հունաց երկիրը։

Նա փնտրում էր այնպիսի մեկին, որը կատարելապես իմանար մաթեմատիկան, և ինքը կարողանար աշակերտել նրան։ Երկար դեգերումներից հետո Տրապիզոնում Շիրակացին վերջապես հանդիպում է իր Ուսուցչին՝ Տյուքիկոս Բյուզանդացուն։ Դա այն հազվադեպ երջանիկ դեպքերից էր, երբ Ուսուցիչն էլ իր հերթին հանդիպել էր իր Աշակերտին։

Տյուքիկոս Ուսուցչի մոտ Շիրակացին մնում է ութ տարի։ Պետք է ենթադրել, որ դրանք նրա կյանքի լավագույն տարիներն էին, երբ նա հնարավորություն ուներ անընդհատ սովորել, անդադար հագեցնել գիտելիքների իր ծարավը և խորամուխ լինել տարբեր գիտությունների մեջ։ Նրա բախտը բերել էր նրանով, որ Ուսուցիչը հրաշալի գրադարան ուներ։ Այստեղ նա կարդում է բազմաթիվ գրքեր, որոնց թվում՝ «հայտնի և գաղտնի, արտաքին (հեթանոսական), գիտական, պատմական գրքեր, բժշկարաններ, ժամանակագրություններ»։

— Ի՞նչ թվարկեմ մեկ առ մեկ, քանի որ չկար այնպիսի գիրք, որ նրա մոտ չգտնվեր...

Երբ Տյուքիկոս Բյուզանդացու հետ նրանք համոզվում են, որ ուսումնառությունն ավարտված է և Ուսուցիչն այլևս ոչինչ չունի տալու Աշակերտին, Շիրակացին վերադառնում է հայրենիք։ Վերադառնում է զինված թե՛ գիտելիքներով, թե՛ ծրագրերով։ Բացել իր դպրոցը և ուսման ծարավ հայ երիտասարդներին իր ժամանակի գիտության հիմունքները ուսուցանել։ Ուսման պրոցեսին զուգահեռ և դրա իսկ թելադրանքով նա մեկը մյուսի ետևից աշխատություններ է գրում բնագիտության տարբեր բնագավառների վերաբերյալ։

Նրա թվաբանական դասագիրքը մեկն է այդ բնույթի հնագույն աշխատություններից և պարունակում է մարդկությանը հայտնի ամենահին «Թվաբանական աղյուսակները», որի չորս բաժինները նվիրված են թվաբանական չորս գործողություններին։ Այդ աղյուսակները հանդիսանում են նրա դասագրքի տեսական մասը, որտեղ յուրաքանչյուր նոր բաժին բացվում է հեղինակի խոսքով։ Բազմապատկման աղյուսակների սկզբում նա իր աշակերտներին ու ընթերցողներին հորդորում է.

— Ով դուք թվերի մեջ խորամուխ եղողներ, համարձակ ընթացեք այն ճանապարհով, որ ես տարածում եմ ձեր առջև, ինչպես բաց կապույտ և մեղմիկ ալիքներ արագընթաց նավերի առջև, որոնք անտարբեր են հոսանքի նկատմամբ, քանի որ համառ աշխատանքով է դյուրըմբռնելի լինում օգուտը։

Անշուշտ, նման հորդորանքը ճշմարիտ ու իրավացի է ոչ միայն յոթերորդ դարի, այլև մեր ժամանակների սովորողների համար։ Որպեսզի ժամանակակից դպրոցականները հնարավորություն ունենան համեմատվել Շիրակացու աշակերտների հետ, թող մտածեն նրա «Խնդրագրքից» քաղված այս խնդրի լուծման մասին։ «Ես եկեղեցի էի կառուցում։ Վարձեցի մի որմնադիր, որը օրական 140 քար էր շարում։ Աշխատանքն սկսելուց 39 օր հետո վարձեցի մի ուրիշ որմնադիր ևս, որը օրական 218 քար էր շարում։ Երբ երկրորդ որմնադրի շարած քարերի թիվը հավասարվեց առաջինին, եկեղեցու կառուցումը ավարտվեց։ Արդ՝ իմացիր, թե քանի՞ օրում հավասարվեց»։

Յոթերորդ դարի առաջին կեսին արաբները նվաճել էին Պարսկաստանը, իսկ հիսունական թվականներին՝ նաև Արևելյան Հայաստանը։ Սակայն, գտնվելով թշնամական շրջապատում, խալիֆայությանն առավել ձեռնտու էր, որ Հայաստանը լիներ իր դաշնակիցը, ոչ թե սովորական վասալը։ Այդ պատճառով հայ նախարարները կարողացան արաբների հետ կնքել այնպիսի պայմանագրեր, որոնք մեր ժողովրդի արևելյան հատվածի համար ապահովեցին մի քանի խաղաղ տասնամյակներ և համեմատաբար լավ պայմաններ՝ գիտության ու մշակույթի զարգացման համար։

Այդ ժամանակ Հայաստանը դարձել էր նաև ապրանքափոխանակության խոշոր

կենտրոն, որտեղ խաչաձևվում էին արևելքից ու արևմուտքից եկող առևտրական կարևորագույն ճանապարհները: Գուցե նաև դրանով էր թելադրված Շիրակացու չափազանց մանրամասն ու անչափ արժեքավոր աշխարհագրական աշխատությունների ծնունդը: Նրա «Աշխարհացույցը» նկարագրում է յոթերորդ դարում հայտնի բոլոր երկրների տեղադրությունը, դրանց բնակլիմայական պայմանները, բնակչության կազմը, կենդանական աշխարհը, բնական հարստությունները ու այլ կարևոր տեղեկություններ: Թե որքան արժեքավոր է եղել այդ աշխատությունը իր ժամանակի և հետագա դարերի համար, վկայում է մեզ հասած ձեռագրերի քանակը, որն անցնում է հիսունից: Հավանաբար այդ աշխատության երկրորդ մասը կամ հավելված կարող է համարվել Շիրակացու աշխարհագրական մյուս աշխատանքը՝ «Մղոնաչափքը», որը նվիրված է երկարության միավորների նկարագրությանն ու կարևոր բնակելի վայրերի իրարից ունեցած հեռավորություններին:

Պետք է ենթադրել, որ ինչպես ժամանակակիցների, այնպես էլ հետագա սերունդների կողմից ավելի հաճախ ընթերցվել և օգտագործվել են Շիրակացու այն աշխատությունները, որոնք նվիրված են թվաբանությանը, աշխարհագրությանը, տոմարագիտությանը և կիրառական այլ հարցերի: Բայց մեր ժամանակակիցները Շիրակացուն ավելի շատ ճանաչում են իբրև աստղագետ: Դրա պատճառն այն է, որ աստղագիտությանը նվիրված նրա աշխատանքները մեզ են ներկայացնում նրա բնագիտական հայացքները, որոնք սինթեզվել էին ուսման տարիներին ու հետագա երկարատև մտորումների ժամանակ: Նրա «Տիեզերագիտությունը» տիեզերքի կառուցվածքի մասին հնագույն գիտելիքների մի յուրատեսակ հանրագիտարան է: Յուրաքանչյուր հարց քննարկելիս Շիրակացին հատուկ նշում է դրա վերաբերյալ տարբեր տեսակետների առկայության մասին և ամեն անգամ առանձնացնում իրեն առավել հարազատ կարծիքները: «Բարի փիլիսոփաները դրա մասին ասացին...» շարադրում է նա, եթե մտքերը հարազատ են իրեն:

— Ոմանք ասում են, թե Ծիր Կաթինը Հերա աստվածուհու ստինքներից թափված կաթն է... Ոմանք էլ ասում են, թե Վահագնը՝ հայերի նախնին, մի խիստ ձմռան ժամանակ գողացել է ասորեստանցիների նախնու՝ Բարշամի դարմանը, և երկնքում դրա հետքն է, որին մենք ավանդաբար Հարդագողի ճանապարհ ենք անվանում: Դեն նետեցեք այդ ամենը, ով աստվածասեր մարդիկ, և այդպիսի բաների վրա ուշ մի դրեք, քանի որ բարի փիլիսոփաները դրա մասին ասացին, որ դրանք կուտակված բազմաթիվ մեծ ու փոքր աստղեր են, որոնք աղոտ երևալու հետևանքով միավորված լույսով են երևում...

Իսկ Ծիր Կաթինի աստղային բնույթն ապացուցվեց միայն աստղադիտակի հայտնագործումից հետո, Շիրակացու ծնունդից հազար տարի անց...

Նա ասում էր, որ Երկիրը գնդաձև է, որ Արեգակը մեծ է Երկրից, բայց գտնըվում է շատ հեռու, նա ճիշտ էր բացատրում Լուսնի փուլերի փոփոխությունները, Արեգակի ու Լուսնի խավարումները, քննության էր առնում ձայնի ու լույսի արագությունների հարցը, ձյան ու անձրևի առաջացման պատճառները և բազմաթիվ այլ խնդիրներ: Սակայն մտքերի մեծ մասը, որ նա բերում է իր աշխատություններում, առաջինն ինքը չի հայտնել, և նա միշտ նշում է այդ մասին: Նրա մեծությունն այլ էր: Նա ապրում էր այնպիսի ժամանակաշրջանում, երբ եվրոպական գիտությունն, ըստ էության, մեռած էր: Աստղագիտությունը գոյություն ուներ սոսկ որպես աստղագուշակություն: Իսկ Հայոց աշխարհում, Եվրոպայի երբեմնի գիտական խոշոր կենտրոններից մեծ հեռավորության վրա, լիակատար մենության մեջ, Անանիա Շիրակացին շարունակում էր պահպանել հին աշխարհի խոշորագույն նվաճումները, ստեղծաբար ու քննադատորեն դրանից առանձնացնելով այն, ինչ ավելի մոտ էր իր աշխարհայացքին...

Բացի գիտական աշխատություններից ուրիշ գրեթե ոչինչ չգիտենք նրա մասին, նրա կյանքի մասին: Թերևս միայն այն, որ իր ժամանակներում նա արդեն հանրահայտ գիտնական էր, նրա մասին նույնիսկ առասպելներ էին հյուսվում: Բայց դա չէր խանգարում, որ ժամանակ առ ժամանակ նա արժանանար հետադիմական հոգևորականության անբարեհաճ վերաբերմունքին:

— Երբ ես վերադարձա,— ցավով ասում է նա,— շատերը եկան ինձ մոտ սովորելու, և փոքր ինչ խելամտած՝ թողե-



Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

ցին ինձ ու հեռացան, չմնացին մինչև դասընթացի ավարտը:

Նրան խանգարողների ու պարսավողների մեջ էին նաև այդ կիսագրագետ, իրենց արդեն գիտնական երևակայող նախկին աշակերտները: Դա ամենացավալին էր: Նա ինքը նույնպես աշակերտ էր եղել ու մինչև կյանքի վերջը երախտագիտությամբ էր հիշում իր ուսուցչին: Եվ չնայած այդ ցավագին հարվածներին, նա երբեք չհրաժարվեց ուսուցանելուց:

— Դարձյալ ոչ ոքի չեմ արգելել, ովքեր ցանկացել են սովորել, և այսուհետև էլ չեմ արգելի: Եվ այս եմ առհավետ կըտակում ձեզ՝ ինձանից հետո աշխարհ եկող ուսուցիչներիդ՝ իմաստություն և գիտություն սովորեցնել ցանկացողներիդ...

Այդ է կտակում Անանիա Ուսուցիչն արդեն տասներեք հարյուրամյակ և նաև ըրանից հետո՝ առհավետ...

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

# Փոքրիկ աղջիկ

Փոքրիկ աղջիկ,
Ե՛ս երգեի քո փոխարեն՝
Անհոգ, թեթև,
Ինչպես, ասենք,
Բեմ ես մտնում դու այս պահին:

Փոքրիկ աղջիկ,
Ինձ տուր այսօր
Քո ժպիտը,
Քո հույզերը,
Կապույտ-կապույտ երազներդ,
Քո երկինքը
Մի ակնթարթ
Ինձ տուր այսօր…

# Ծղրիդների քաղաքում

Ծղրիդների քաղաքում
Միշ-աղաղակ է անվերջ,
Աղմկում են խենթացած
Խոտերի չոր բույրի մեջ:
Ականջ դրեք դուք նրանց.
Ծղրտում են դաշտում լուռ,
Խինդ ու կարոտ, երգ, հրճվանք
Իրար խառնած ու հյուսած,
Ո՞վ են և ո՞ւմ են կանչում,
Թե՞ վախից են աղմկում,
Եվ շփոթ է, ճիչ ու վեճ
Ծղրիդների քաղաքում:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ






ՍԼԱՎԿԱ ՄԱՆԵՎԱ

# Կկուով ժամացույցի հեքիաթը

Նկարը՝ ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Գյուղական մի հին խրճիթում ապրում էին տատիկն ու պապիկը: Նրանց տունը կահավորված էր համեստ, ինչպես գյուղի մյուս տները: Միայն պատին կկուով մի հին ժամացույց էր կախված, որը միակն էր գյուղում: Ամեն առավոտ կկու՚ն գլուխը դուրս էր հանում ժամացույցից և

վեց անգամ կուկու էր կանչում: Նա արթնացնում էր պապիկին ու տատիկին, և նրանք վեր էին կենում, զբաղվում իրենց ամենօրյա գործով: Պապիկն աշխատում էր այգում, իսկ տատիկը՝ տանը: Ժամը տասներկուսին կկուն գլուխը դուրս էր հանում ու տասներկու անգամ կուկու էր կանչում, տատիկին ու պապիկին հրավիրում էր ճաշի: Գյուղում ոչ ոք այդպես ճիշտ աշխատող ժամացույց չուներ: Դրա համար բոլորը տատիկին ու պապիկին էին հարցնում ժամանակը:

Բայց մի օր կկուն գլուխը դուրս հանեց ու վեց անգամ կուկու կանչեց՝ տասներկու անգամ կանչելու փոխարեն: Եվ բոլոր գործերը հակառակ գնացին, քանի որ ոչ ոք չէր կասկածում, թե այդ հին ժամացույցը կարող է սխալվել: Տատիկը վախեցած վեր թռավ.

— Էս ինչքա՞ն եմ քնել: Արդեն կեսօր է. իսկ ես դեռ կերակուր չեմ պատրաստել, պապիկը կբարկանա...

Պապիկն էլ վեր թռավ, երբ լսեց կկվի ձայնը, մտածելով, որ երևի բոլորովին ուժերը կորցրել է, եթե այդքան երկար է քնել ու չի լսել կկվի առավոտվա կանչելը:

— Արդեն ուշ է այգում աշխատելու համար,— ասաց նա ու շփոթված նստեց դարպասի քարին: Հարևանը խուրջինն ուսին անցնում էր շտապ, պապիկին տեսնելով, կանգ առավ.

— Պապ, ժամը քանի՞սն է, շտապում եմ, որ գնացքին հասնեմ...

Պապիկը պատասխանեց, որ ժամը տասներկուսն է: Հարևանը զարմացավ ու վերադարձավ ինքն իրեն խոսելով.

— Վերջ, գնացքն արդեն մեկնել է:

## ԱՄՓՈՓՈՒՄ ԵՆՔ ՄՐՑՈՒՅԹ

Սիրելի դպրոցականներ, ինչպես հիշում եք, «Պիոներ» ամսագիրը 1985 թվականի դեկտեմբերյան համարում ինքնանկարի ու ազատ թեմայով շարադրության մրցույթ էր հայտարարել: Անցել է ուղիղ մեկ տարի, և եկել է արդյունքները ամփոփելու ժամանակը:

Մրցույթի մասնակիցներից համեմատաբար ակտիվ էին պատանի նկարիչները: Թեև մեր սպասելիքները ավելին էին, սակայն խմբագրության հասցեով եկած ինքնանկարները ևս խրախուսանքի են արժանի: Ինքնանկարի մրցույթն ինքնին յուրօրինակ էր և հետաքրքիր, քանի որ մանկության տարիներին շատերն են վրձին ու ներկ իրենց ձեռքն առել, սակայն քչերն են իրենց մեջ ուժ գտել ստեղծելու սեփական դիմանկարը: Եվ մեր ամսագրի հայտարարած մրցույթը շատերին առաջին անգամ հնարավորության մղեց ստեղծել ինքնանկար, այսինքն՝ խորհել, թե ինչպես ներկայանալ ընդհանուրին՝ առանց սեփական գեղեցիկ հատկանիշները թաքցնելու ավելորդ ամոթխածության, բնավորության բացասական գծերը ցույց տալու անկեղծությամբ ու քաջությամբ: Ուստի՝ չզարմանաք, եթե ասենք, որ մեզ ինքնանկար ուղարկած մանուկների ու պատանիների ոչ միայն արտաքին, այլև ներքին հոգեկան էության մասին մենք մոտավոր, սակայն բավական ճիշտ պատկերացում ենք կազմել:

Ազատ թեմայով շարադրությունները թեև իրենց քանակով գերազանցում էին ինքնանկարներին, սակայն, ցավոք, որակով զգալիորեն զիջում էին: Դրանց մեծ մասն «աչքի էին ընկնում» գեղեցկախոսությամբ, թեմայի ծեծվածությամբ, ավելի շատ գրված էին կարծես մատյանում դրվող բարձր գնահատականի ակնկալիքով, քան թե իրենց սրտի հույզերը, կյանքում հանդիպող դժվարությունները անկեղծորեն արտահայտելու մղմամբ: Երևաց այն ցավալի փաստը, որ այսօր մեր դպրոցականների համար ինչ-որ արգելված թեմաներ ու հույզերի որոշակի սահմաններ են առաջացել, որոնք, դա ևս պարզորեն նկատվում էր, ստեղծվել են ոչ այնքան իրենց՝ դպրոցականների, որքան ուսուցիչների և ընդհանրապես մատ թափ տալ սիրող մեծահասակների մեղքով:

Այս ամենով հանդերձ՝ խմբագրությունն առանձնացրեց և ամսագրի ընթերցողներին ներկայացրեց

Մի դպրոցական, պայուսակը ձեռքին, նրանց պատուհանի տակով անցնելիս հարցրեց.

— Տատիկ, ժամը քանի՞սն է:

— Տասներկուսն է, որդի,— պատասխանեց տատիկը:

Աշակերտը մտածեց, որ քնել մնացել է, դասընկերները կծիծաղեն այդքան ուշ դպրոց գնալու համար, ու ետ դարձավ տուն:

Փոստատարը, որ ամեն օր նույն ժամին անցնում էր նրանց տան կողքով ու տեսնում էր պապին աշխատելիս, այդ օրը զարմացավ, որ նա չի աշխատում, նստած է դռան քարին:

— Բարի լույս, պապիկ: Էսօր ինչ-որ ծուլացել ես, չես աշխատում,— կանչեց նա:

— Չեմ ծուլացել, քնել, մնացել եմ...

Դու ես ծույլը, որ փոստը փոխանակ առավոտ կանուխ բաժանես մարդկանց, արդեն ժամը տասներկուսն է, նոր ես բաժանում...

Փոստատարը նույնպես չէր կասկածում պապիկի ժամացույցի վրա և հեծանվով շտապեց գյուղ: 6 ժամ հետո կկուն գլուխը դուրս հանեց ժամացույցից և կուկու կանչեց արդեն առանց ընդմիջելու: Պապիկը հասկացավ, որ ճիշտ աշխատող ժամացույցը նույնպես կարող է խափանվել: Նա պատից ցած բերեց ժամացույցը, կկուի կոկորդը մի քանի կաթիլ յուղ կաթեցրեց ու նորից կախեց տեղը: Հաջորդ օրն արդեն ամեն ինչ գնաց առաջվա պես: Կկուն խնամքով, ճիշտ ժամը վեցին, արթնացնում էր տատիկին ու պապիկին և այլևս սխալ ցույց չէր տալիս:

Թարգմ. ՄԵՏԱՔՍԵ



...ԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

համեմատաբար հաջողված ստեղծագործությունները, իսկ խմբագրական կոլեգիան որոշեց.

ինքնանկարի համար շնորհել՝

մեկ առաջին մրցանակ՝ **Մհեր Ղազարյանին**, Երևան, «Պիոներ» № 2,

երկրորդ մրցանակ՝ **Անահիտ Բերբերյանին**, Երևան, «Պիոներ» № 5,

երրորդ մրցանակներ՝ **Նաիրա Մաճկալյանին**, Վրացական ՍՍՀ, Մառնեուլիի շրջան, Ծահումյան ավան, «Պիոներ» № 4, **Վահե Գևորգյանին**, Կիրովական, «Պիոներ» № 9, **Լուսինե Դեմիրճյանին**, Երևան, «Պիոներ» № 5,

Խրախուսական մրցանակներ. **Ծուշանիկ Գևորգյանին**, Կիրովական, «Պիոներ» № 10, **Նարինե Ֆրանգուլյանին**, Կիրովական, «Պիոներ» №10, **Հովսեփ Խալաթյանին**, Երևան, «Պիոներ» № 4:

Ազատ թեմայով շարադրությունների համար ամսագրի խմբագրական կոլեգիան որոշեց տալ միայն

խրախուսական մրցանակներ.

**Սոնյա Աբգարյանին**, «Երևան դարձած իմ Էրեբունի», «Պիոներ» № 7, **Արմենուհի Մարտիրոսյանին**, «Նվիրական մասունք», «Պիոներ» № 7, **Արսեն Նազարյանին**, «Հայաստան», «Պիոներ» № 11:



Հայտարարվում է բանաստեղծության, պատմվածքի, նկարչական աշխատանքի, քանդակի ցանկացած թեմայով մրցույթ՝ նվիրված Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակին: Մասնակցել ցանկացողները իրենց աշխատանքները պետք է ուղարկեն կամ բերեն խմբագրություն մինչև 1987 թվականի հունիսի 15-ը:

Մրցույթի արդյունքները կամփոփվեն 1987 թվականի սեպտեմբերյան համարում:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# «ՄԱՀՎԱՆ ՀՈՎՏԻ» ԳԱՂՏՆԻՔԸ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Մեր դարի 50-ական թվականներին չափազանց սարսափազդու համբավ էին ձեռք բերել Բրազիլիայի ներքին շրջանները և Պարագվայի ու Բոլիվիայի սահմանագլխում գտնվող Գրան-Չակո անապատը: Այստեղ հաճախ էին հայտնաբերվում մարդկային դիակներ, գրեթե մշտապես փաթաթված ինչ-որ բույսի հսկայական, ժապավենաձև տերևներով: Այդ վայրի համբավը այնպես էր տարածվել աշխարհով մեկ, որ ամենուրեք սկսել էին խոսել Գրան-Չակո անապատում աճող մարդակեր ծառերի մասին: Մարդիկ մահու չափ վախենում էին այդ վայրերից և ոչ մի գնով չէին համարձակվում կտրել անցնել անապատը, որի մոտավորապես կենտրոնական մասում էր գտնվում «Մահվան օազիսը»: Ֆրանսիացի գիտնական Բլոսսֆելդը, որը որոշ ժամանակ ապրում էր այդ վայրերում գտնվող Մատու-Գրոսու բնակավայրում, հատկապես զբաղվեց այդ հանելուկային երևույթով, նախօրոք համոզված լինելով, որ երկրագնդի վրա մարդակեր ծառեր չկան:

Արշավախումբը, Բլոսսֆելդի ղեկավարությամբ հատեց Գրան-Չակոն և հասավ «Մահվան օազիսին»: Բլոսսֆելդի առաջին գործը եղավ հեռվից դիտել մարդակեր համարվող ծառերը: Շուտով պարզվեց, որ դրանք պատկանում են բուսաբանների հայտնի ֆիլոդենդրոն ցեղին, իսկ տեսակը անվանվում է բիպինատիֆիդում: Այդ բույսը ունի մեկ մետր և ավելի երկարության տերևներ և հրաշալի բուրումնավետ ծաղիկներ, որոնց բուրմունքը իբրև թե հրապուրում է մարդ-

կանց, մոտեցողին հանկարծ շշմեցնում, և մարդը կորցնում է գիտակցությունը, ու այդ ժամանակ մարդակեր բույսի տերևները, փաթաթվելով նրան, ծծում են արյունը: Բլոսսֆելդը նկատեց, որ «մարդակեր ծառի» ծաղիկները իսկապես չափազանց բուրումնավետ են, սակայն բոլորովին էլ շշմեցնող հատկություն չունեն: Համենայն դեպս նա համոզվեց այդ բանում, ժամերով նստելով ծառի զով ստվերում: Դեռ ավելին, Բլոսսֆելդը ճաշակեց նաև այդ հանելուկային բույսի համեղ պտուղները, և նրա հետ ոչինչ չպատահեց: Միանգամայն պարզ էր, որ «մարդակեր» համարվող ծառը միանգամայն սովորական ու անվնաս բույս է:

Այդ դեպքում որտեղի՞ց էին «Մահվան օազիսում» հայտնվում մարդկային դիակները:

Հարկ եղավ ավելի մանրամասն զբաղվել այս երևույթի ուսումնասիրությամբ, մինչև որ հնարավոր եղավ պարզել:

Ինչպես արդեն նշեցինք, «Մահվան օազիսը» գտնվում է Գրան-Չակո անապատի մոտավորապես կենտրոնում, Գուապորի գետի բարեբեր հովտից ավելի քան 200 կմ դեպի հյուսիս: Անզգույշ ճանապարհորդները, եթե ջրի անհրաժեշտ պաշար չէին վերցնում իրենց հետ, մի կերպ, կիսամեռ վիճակում հասնում էին «Մահվան օազիս» և, այնտեղ ջուր չգտնելով, հուսահատված նստում «մարդակեր ծառերի» ստվերում, կորցնելով անապատից դուրս գալու ամեն մի հույս. չէ՞ որ «Մահվան օազիսից» դեպի հյուսիս անապատը շարունակվում էր ևս ավելի քան 200 կիլոմետր:

Սակայն ինչո՞ւ էին մարդկային դիակները փաթաթված ֆելոդենդրոն բիպինատիֆիդումի տերևներով:

Այդ երևույթը բացատրելը շատ հեշտ էր: Այս մշտադալար ծառը տերևաթափ չի կատարում: Նրա ժապավենաձև տերևները անընդհատ աճելով, ծայրերից մաշվում են և քայքայվում: Բայց որպեսզի տերևների ավելորդ մասերը պոկվեն, էվոլյուցիոն պրոցեսի ընթացքում այնպիսի հարմարվողականություն է ստեղծվել, որ տերևները փաթաթվում են զանազան առարկաների (քարերի, կոճղերի, նույնիսկ մարդկանց և զանազան կենդանիների դիակների) և ուժեղ քամու ժամանակ պոկվում մայր բույսից: Նշանակում է, այստեղ բույսի մարդակերության հարցը միանգամայն ժխտվում է:

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# Ափսոս, որ դուք չեք ճանաչում

Ծաղկանց վարար հրդեհի մեջ
Մոլորվել է մարգի առուն,
Սակայն բոցի թերթերը, տես,
Կովի շուրթերը չեն այրում:

Ու Աբովի ոտքերի տակ
Լիճն է շրջված երկնքի պես,
Կովը հակվեց լճին հստակ
Ու երկինք է խմում ասես:

Կերավ բոցեր, երկինք խմեց
Կարմիր կովը լճի ափին,
Հետո մեղմիկ նա բառաչեց,
Երբ մոտեցավ նրան մի կին:

Ու հետո կաթը նվագեց
Կնոջ ճերմակ դույլի կողին,
Հետո նվագն այդ փրփրեց,
Փոխվեց ճերմակ գույն ու շողի:

Ու կովն ասես մի դաշնամուր,
Նվագողն էլ անուշ մի կին,
Ափսոս, որ դուք չեք ճանաչում
Իմ հորաքույր Մանուշակին:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



ՌԱՖԱՅԵԼ ՆԱՀԱՊԵՏՅԱՆ




Նկարը՝ ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ

Փոթորկալից մի գիշեր, երբ աշխարհը իր համար քնած էր, ընդարձակ ու տաք ախոռում ծնվեց խոշոր ու զարմացած աչքերով, ճակատին սպիտակ, երկար բիծ ունեցող ձիուկը: Եվ չնայած ձիուկը շատ փոքր էր, պարզորոշ զգացվում էր, թե ինչ գեղեցիկն է նա, ու ախոռում եղած մյուս կենդանիները՝ կովերը, ոչխարները, խոզերը և ավանակը՝ իր իշուկի հետ հիացած, նրան էին նայում: Իսկ մայր ձին գուրգուրում էր նորածնին ու երջանիկ էր: Նրան հատկապես ուրախացնում էր ձիուկի ճակատի սպիտակ բիծը, որովհետև համոզված էր, որ այդպիսի նշանները երջանկություն են բերում: Ու երբ տերը համբուրել էր մայր ձիու խոնավ դունչը, շոյել նորածնին ու ախոռի դուռը ամուր փակելով, դուրս գնացել, մայր ձին ասել էր.

— Դու բախտավոր ես ծնվել, որդիս: Ճակատիդ սպիտակ բիծը այդ է նշանակում: Մի որևէ մեծ երազանք ունեցիր, ու այն անպայման կիրականանա:

— Իսկ ի՞նչ բան է երազանքը, մայրիկ,— հարցրել էր ձիուկը:

— Սքանչելի մի բան է,— թախծոտ աչքերը փայլեցնելով ասել էր մայր ձին,— խավար ու անձրևոտ գիշեր ժամանակ, երբ մոլորված ես ու չգիտես որ կողմը գնալ, երազանքը նմանվում է հեռվում անսպասելիորեն բոցկլտացող կրակի: Հզոր ու բարեկամ կրակի, որ քեզ ճանապարհ է մատնանշում: Երազանքը մեջդ արևի պես մի բան է, որ չի թողնում մրսես ու հոգիդ լուսավոր և տաք է միշտ պահում: Երազանքը նեցուկ է լինում քեզ ու եթե նույնիսկ չի իրականանում՝ ոչինչ: Կարևորն այն է, որ նա կա: Ու գեղեցիկ, վեհ մի բանի ձգտելը օգնում է կյանքի դժվարությունները հաղթահարելուն:

— Հրաշալի է,— մրմնջացել էր ձիուկը, որը ոչ միայն գեղեցիկ էր, այլ նաև խելոք,— իսկ ես ի՞նչ երազեմ, մայրիկ, ի՞նչը դարձնեմ իմ երազանքը:

— Մեզ՝ ձիերիս համար երազելու շատ բան կա,— ասել էր մայր ձին, որ կյանքի հարուստ փորձ ուներ,— ոմանք երազում են սայլին չլծվել՝ ողջ կյանքում բեռ քարշ չտալ: Երազում են հեծելաձի լինել՝ ընդամենը մեկ հեծյալ ունենալ, մեկ տեր, ու դա արդեն նրանց համար չափազանց մեծ բան է: Մյուսները երազում են ձիարշավարան ընկնել, ուր կյանքը հաճելի է, և միշտ ուշադրության կենտրոնում ես գտնվում: Ուրիշներին խենթացնում է ձիաբուծարան ընկնելու գաղափարը, որովհետև այնտեղ չարչարանքը քիչ է, իսկ կերը և խնամքը՝ շատ:

— Իսկ ես դրանցից ո՞րը ընտրեմ, մայրիկ,— անհամբերությամբ հարցրել էր ձիուկը:

Մայր ձին ոչ միայն կյանքի հարուստ փորձ ուներ, այլև բավականին խելոք էր: Սայլին լծված ժամանակ, երբ բեռներ էր տեղափոխում, չձանձրանալու համար նա այնքան էր մտածել, որ հիմա շատ գիտուն էր դարձել ու լավ էր ճանաչում կյանքը:

— Շատ տարիներ առաջ,— հոգոց հանելով ասաց նա,— երբ ես երիտասարդ էի ու քայլում էի մի ծեր ձիու կողքով, որին ըսպանդանոց էին տանում...

— Իսկ ի՞նչ բան է սպանդանոցը,— ընդհատեց ձիուկը,— ես դա չգիտեմ:

— Լավ կլինի, որ երբեք էլ չիմանաս,— խստորեն ասաց մայրը,— և այդ ի՞նչ սովորություն է՝ անընդհատ ընդհատել մեծերին,— ու անմիջապես մեղմանալով շարունակեց,— այո, ուրեմն երբ քայլում էի այդ ծեր ձիու կողքով, մի զարմանալի պատմություն լսեցի նրանից: Թևավոր ձիերի մասին, որոնք իրենց համար ապրում են, և մարդկանցից ոչ մեկի նույնիսկ մտքով չի անցնում նրանց ինչ-որ

բան հրամայել։ Ծեր ձին ասաց, որ դա հեքիաթ չէ, այլ ճշմարիտ ու հավաստի մի բան, ու ինքը նույնիսկ տեսել է այդպիսի մի ձիու և խոսել հետը։

— Թևավոր ձի՜...,— զարմացավ ձիուկը,— բայց ձիու ինչի՞ն են պետք թևերը։

— Ազատ ապրելու համար, հիմարիկ,— տխուր ժպտաց մայր ձին,— կարծում ես, թե դա քի՞չ բան է։ Իմ կարծիքով մեծագույն երջանկությունը հենց ազատ ապրելու մեջ է։ Իսկ թևավոր ձիերը գաղափար անգամ չունեն, թե ինչ բան է սանձը, մտրակը, իրենք են որոշում ինչ ուղղությամբ սլանալ, ուր գնալ։

— Ինչ լավ բան է այդպես ապրե՜լը, մայրիկ,— հիացած շշնջաց ձիուկը,— հիմա ես գիտեմ, թե ինչ եմ երազելու՝ երազելու եմ ազատ լինել և թևեր ունենալ։

— Մայրիկ,— ասաց ախոռում եղած իշուկը իր մորը,— ես էլ եմ ուզում թևեր երազել։

— Հիմար չլինես,— ասաց ավանակը իր որդուն,— մի լսիր այդ խենթ ու ցնդած ձիերին։ Գործ չունես նրանց հետ։ Ավելի լավ է ուզենաս, որ բեռդ միշտ թեթև լինի, ախոռդ տաք, կերածդ խոտը թարմ և շատ։ Մնացածը սուտ է։

Բայց ճակատին սպիտակ բիծ ունեցող ձիուկը մոր ասածները շատ լուրջ ընդունեց։ Նա հենց այդ էլ իր երազանքը դարձրեց և դրա հետ միասին մեծանում էր։ Երբեմն, գիշերները, երբ ախոռում բոլորը քնած էին լինում, նա շրջում էր գլուխը և ուշադիր կողերին նայում՝ ստուգելու համար՝ թևերը աճե՞լ են, թե՝ դեռ ոչ։ Բայց ժամանակն անցնում էր, անցնում, իսկ թևերը չկային։

Առավոտները տերը լծում էր մայր ձիուն, մի պարանով էլ ձիուկին կապում էր սայլին, ու գնում էին դաշտ։ Խոտ էին տեղափոխում։ Երբ դաշտում եղած խոտը տեղափոխում-վերջացնում էին ու ձիուկը ուրախանում էր, որ հիմա մորը հանգիստ կթողնեն և նա մի լավ կհանգստանա, տերը մի այլ գործ էր գտնում։ Աշխատանք միշտ կար, և սայլին կապված ձիուկը, մոր կողքով թեթև վազելով, երբեմն զարմանում էր մոր ուժի ու դիմացկունության վրա։ Ու նա անհամբերությամբ սպասում էր, թե երբ է բավականաչափ մեծանալու, որպեսզի օգնի մորը՝ թեթևացնի նրա աշխատանքը։ Այս և նման բազմաթիվ այլ բաների մասին ձիուկը շատ էր մտածում, բայց դա ամենևին չէր նշանակում, որ նա մոռացել էր թևեր ունենալու երազանքը։ Այդ երազանքը ամուր նստած էր նրա մեջ, ու ձիուկը մազաչափ անգամ չէր կասկածում, որ այն երբևէ իրականանալու է։



Հաճախ էր պատահում, որ պարանով սայլին կապված ժամանակ, երբ նա վազում էր մոր կողքով և հանկարծ վերևից թռչունների ձայներ էր լսում, ասես մեխվում էր տեղում ու բարձրացնելով գլուխը, հիացած թռչուններին էր նայում: Ու պատկերացնում էր իրեն, երբ դանդաղ շարժելով թևերը, հպարտորեն սլանալու էր նրանց կողքով և շարունակելու էր բարձրանա՜լ, բարձրանա՜լ, բարձրանա՜լ... Այստեղ ձիուկի երազանքը միշտ ընդհատվում էր, որովհետև պարանը, որով սայլին էր կապված, ձգվում էր, խեղդում նրա վիզը, ու ձիուկը, ափսոսանքով իջեցնելով գլուխը, շարունակում էր վազել մոր ետևից: Եվ դեռ երկար ժամանակ պարանի սեղմված տեղում վիզը շարունակում էր ցավել, սակայն ձիուկը ամենևին չէր խրատվում և ամեն անգամ վերևից թռչունների ձայներ լըսելիս մեխվում էր տեղում ու բարձրացնում գլուխը:

Մի օր էլ, երբ նա հրաշալի և ուժեղ մի նժույգ էր դարձել, դաշտում աշխատելուց հետո տուն վերադարձավ և տխուր միայն նըրան մտցրին: Մորը, չգիտես ինչու, թողեցին դրսում: Այդ գիշերը ձիուկը, որ հիմա հրաշալի մի նժույգ էր, շատ անհանգիստ անցկացրեց և անչափ զարմանում էր՝ տեսնելով իրեն հառած մյուս կենդանիների ցավակցական հայացքները: Իհարկե, կարելի էր հետաքրքրվել, կարելի էր հարևաններից հարցնել, թե ի՞նչ է պատահել և ինչո՞ւ են իրեն այդպես նայում, բայց ձիուկը նաև հըպարտ արարած էր ու չէր ուզում ձի չծնվածների հետ երկար-բարակ խոսակցություն սկըսել: Նա զսպում էր իրեն և մտածում, որ հարկավոր է համբերել և առավոտյան այդ մասին հարցնել մորը: Սակայն առավոտյան մայր ձին չերևաց, ու դրանից հետո նա այլևս երբեք չտեսավ մորը, իսկ տերը ցանկացավ նրան սայլին լծել: Ձիուկի համար անչափ վիրավորական բան էր դա, ու նա երկար ժամանակ դիմադրում էր, բայց մտրակի հարվածները նրան ի վերջո հանդարտեցրին ու, աշխատելով չնայել շուրջը եղած կենդանիներին՝ նա լուռ ու անտարբեր սայլին մոտեցավ: Եվ օրերը սկսեցին շատ միօրինակ անցնել: Ամեն առավոտ նրան սայլին էին լծում, ու նա սուսուփուս կատարում էր այն, ինչ տարիներ շարունակ մայրն էր արել: Համակերպված մի անտարբերությամբ, նա աշխատում էր, իսկ երեկոները տխուր մըտնելով, իր անկյունն էր քաշվում և անհամբեր ծամում առջևը եղած խոտը: Սակայն գիշերները, երբ բոլոր կենդանիները քնած էին լինում, նա շուռ էր տալիս գլուխը և կողերին էր նայում: Երկար և ուշադիր նայում էր, որ տեսնի՝ փոփոխություն չկա՞, ո՞ւր են թևերը և ե՞րբ են դրանք վերջապես աճելու: Բայց օրերն անցնում էին, անցնում, իսկ թևերը չկային: Ձին վերջապես թողեց այդ սովորությունը, բայց մի բան, որ չմոռացավ ու չթողեց՝ վերև նայելն էր: Թռչունների ձայներ լըսելիս նա, ինչպես միշտ, մեխվում էր տեղում, բարձրացնում գլուխը ու անասելի մի կարոտով նայում էր նրանց ետևից և պատկերացնում, թե ինչպես ծանր-ծանր ու հպարտ շարժելով թևերը սլանալու է նրանց կողքով: Ձին այնքան կլանված էր լինում իր երազանքով, որ չէր զգում, թե ինչպես է տերը բարկացած մտրակում ու բղավում իր վրա: Իսկ տիրոջը ձիու այդ սովորությունը խիստ զայրացնում էր և համբերությունից հանում:

— Էհե՜յ,— բղավում էր տերը ու զայրացած մտրակում,— էլի գժվեցի՞ր: Ձի ե՞ս, թե՞ կարապ: Ախր քո գործը սայլ քաշելն է, երկնքին նայելը քո ի՞նչ բանն է:

Երբ թռչունները անհետանում էին, ձին կախում էր գլուխը և, ասես ոչինչ չէր պատահել՝ շարունակում էր ճանապարհը:

— Լսիր, հարևան,— մի երեկո, երբ ախոռում մենակ էին, դիմեց ավանակը ձիուն,— մի լավություն եմ ուզում քեզ անել՝ խորհուրդ եմ ուզում տալ: Էս կյանքում ամենավատ բանը գիտե՞ս ինչն է՝ ախմախությունն է: Իսկ դու ախմախ ես, որ կաս: Ախր քեզ ո՞վ է ասել, թե ձիու գործը երկնքին նայելն է: Էն, որ նոր էիր ծնվել ու մերդ հեքիաթ պատմեց, մոռացիր: Սուտ, հնարած բան էր: Վերջ տուր էդ սովորությանդ, հարևան: Վերջ տուր: Էնպես մի անի, որ մարդիկ կաշիդ քերթեն: Էդ բանը նրանք կարող են անել:

Ձին ոչինչ չպատասխանեց: Կախեց գլուխը ու մի տեսակ խեղճացավ: Վաղուց արդեն նրա մեջ աղոտ կասկած էր ծնվել, որ թևերի մասին երազանքը լինելու բան չէ, և իզուր է ինքը հույսեր փայփայում: Կամքի մեծ լարումով էր միայն նրան հաջողվում կասկածը հեռու վանել իրենից և շարունակել հավատալ, որ մի օր երազանքը իրականանալու է: Բայց հիմա, լսելով ավանակին, նա միանգամից կուչ եկավ: Դեռ երբեք, ոչ ոք նրան այդ մասին բարձրաձայն չէր ասել: Երբ նա գլուխը շփոթված բարձրացրեց, տեսավ, որ ախոռ մտած մյուս կենդանիները քմծիծաղում են: Հասկացավ, որ նրանք լսել են ավանակի խոսքերը ու համամիտ են: Որոշ ժամանակ ձին դառնացած ու մոլոր նրանց էր նայում: Բայց ախոռում եղած կենդանիները զարմանքով տեսան, որ ձիու աչքերի արտահայտությունը փոխվում է՝ խեղճությունն

ու մոլորվածությունը կորան այնտեղից, փոխարենը մոլեգին և անզուսպ ինչ-որ բան հայտնվեց: Ու հանկարծ, կանգնելով ետևի ամբակների վրա, ձին ծառս եղավ տեղում, օդում սպառնալի շարժեց առջևի ոտքերը, որից մուրի փայտե ճաղերը փշուր-փշուր եղան, և խրխնջաց: Ազատ ու անսանձ մի խըրխընջոց էր դա, որի մեջ ուժ կար, անհնազանդություն և հավատ սեփական ուժերի նկատմամբ: Ախոռի մյուս կենդանիները սուսուփուս իրենց անկյունները քաշվեցին: Իսկ ձին, գլուխը հպարտ պահած, թեթև վարգով դուրս եկավ ախոռից: Բակում նա դարձյալ ետևի ամբակների վրա կանգնեց և, առջևի ոտքերը օդում սպառնալիորեն թափահարելով՝ հաղթական խրխնջոց արձակեց: Աչքի պոչով նա հասցրեց նկատել տիրոջը, որ տեսածին չհավատալով, տան շեմին կանգնած, ճպճպացնում էր աչքերը: Ձին, նրա վրա ուշադրություն չդարձնելով, մի վերջին անգամ օդում բռունցքների պես թափահարելով առջևի ամբակները՝ միանգամից պոկվեց տեղից: Հրաշալիորեն զգալով ոտքերի մկանների ազատ ու ձիգ խաղը, ձին սլացավ:

— Իսկ ես ախր նրան՝ այդ հիմարին զգուշացրեցի,— ցավակցաբար գլուխն օրորեց ավանակը, երբ տերը նրանց կրկին ախոռն էր մտցրել ու դուռը փակել,— խորհուրդ տվեցի խելքի գալ: Հիմա ի՞նչ պիտի անի խեղճը: Ո՞ւր պիտի գնա: Գայլերի բաժին կդառնա կամ քաղցից կսատկի: Այսպիսի հրաշալի ախոռից էլ փախչե՞ն... այ քեզ խելք:

Հետագա մի քանի օրերը տերը ապարդյուն որոնում էր ձիուն, սակայն հողի վրա լավ պահպանված նրա հետքերը քարքարոտ մի տեղ անհետանում էին, և այլևս դժվար էր գլխի ընկնել, թե նա ո՞ր ուղղությամբ կամ ո՞ւր է գնացել:

— Չէ,— երեկոները գլուխը իբր ցավակցաբար շարժում էր ավանակը,— մեր տերը նրան էլ չի գտնի: Գտնողները գտել են,— ախոռում եղած կենդանիներին նայելով, բազմանշանակ ասում էր նա՝ հասկացնելով, որ նկատի ունի գայլերին,— և սա թող բոլորին խրատ լինի:

Ախոռում միաժամանակ տարօրինակ փըսփըսոցներ էլ էին տարածվել: Իբրև թե ձիուն տեսնողներ են եղել երկինք թռչելիս: Եվ նույնիսկ ինչ-որ մեկը խոսել է նրա հետ: Ու այդ ինչ-որ մեկին խիստ զարմացրել է ձիու հրաշագեղ ու շատ երջանիկ տեսքը: Սակայն ախոռում այս մասին խոսելիս կենդանիները ձայները ցածրացնում էին, որովհետև ավանակը նման խոսակցությունները լսում էր քմծիծաղով և ապա ծաղրում խոսողներին:

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# Ինչպես էին մեր նախնիները դիմավորում Նոր տարին



● ԲԱՐՁՐ ՀԱՅՔՈՒՄ ճերմակ ցորենի հաց էին թխում, կեսը ուտում էին հին տարում, մյուս կեսը՝ նոր, կարծես խընդրելով հայոց աստվածներին, որ նոր տարին հին տարվա պես հացառատ լինի:



● ԱՂՁՆԻՔՈՒՄ Նոր տարվա ուտելիք-

ներով ծաղկազարդված սեղանի վրա մի քանի բուռ հացահատիկով փոքրիկ բլուր էին շինում և ասում․

— Հիմա Անահիտ աստվածուհին կգա, կշնորհավորի Նոր տարին, մի պատառ հաց կվերցնի և գալիք տարում ցորենի բլուրներով կվարձատրի մեր արդար աշխատանքը։



**ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆՈՒՄ** հին ու նոր տարիների սահմանագլխին թոնիր էին վառում և թարմ լավաշի հոտով լցնում տունը։



**ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆՈՒՄ** Նոր տարվա նախօրյակին գինու բոլոր կարասների ու տիկերի բերանները փակում էին, կարծելով, թե հայոց Ամանորի պատանի աստվածը կարող է գինի խմել, հարբել և մոլորվել։ Բայց նկատի առնելով, որ Ամանորը երկար ճամփա է անցել և կարող է քաղցած լինել, նրա համար կարասների և տիկերի բերաններին մեկական կտոր թարմ հաց էին դնում։

**ԾՈՓՔՈՒՄ** ցորենը աղանձ էին անում, մի մասը ուտում էին, մի մասը լցնում գետը կամ առուն՝ նվիրելով անձրևի աստծուն, Նոր տարին ցորենաբեր լինելու համար։

**ԿՈՐՃԱՅՔՈՒՄ** տան գլխավորը չորեքթաթ շրջում էր սենյակի մեջ և Նոր տարվա համար թխված լավաշից կտորներ էր տալիս տան անդամներին։ Դրանով կարծես ասել էր ուզում, որ Նոր տարուն աստվածները հաց կտան նրան, ով մեջքը ծռած կաշխատի օրնիբուն։

**ՊԱՐՍԿԱՀԱՅՔՈՒՄ** Նոր տարվա հացի խմորը շաղում էին Կապուտան լճի ջրով, հուսալով, որ Նոր տարում երաշտ չի լինի։ Պարսկահայերը ասում էին, թե երաշտի տարիներին Կապուտանը փոթորկվում է, նրա ցայտքերը թռչում են երկինք, ապա անձրև դառնալով, թափվում շոգից տոչորվող արտերի վրա։

**ՍՅՈՒՆԻՔՈՒՄ** Նոր տարվա շեմին իրարից խռոված մարդիկ պետք է կրծեին հացի նույն կտորը, այլապես աստված բերքառատ չէր անի նրանց արտերը։

**ԱՐՑԱԽՈՒՄ** ցորեն էին խաշում, լցնում մեծ ամանի մեջ և դնում սեղանին։ Խաշվելուց հատիկները ուռչում էին և սովորականից երկու անգամ մեծանում։ Արցախցին դրանով հիշեցնում էր աստվածներին, որ հաճելի կլինի, եթե նոր տարում ցորենի հատիկները այդքան խոշոր լինեն։

**ՓԱՅՏԱԿԱՐԱՆՈՒՄ** Նոր տարուց մի քանի ժամ առաջ տան եղած գարին տանում էին գոմ կամ մի այնպիսի գաղտնի անկյունում էին պահում, որ Ամանորի աստծու աչքին չերևա, չասի, թե ունեք և նոր տարին ցորենաբեր չանի։

**ՈՒՏԻՔՈՒՄ** տան շեմին կախում էին մի կտոր հաց, ցանկանալով ասել, որ ամեն մարդ կարող է հյուրասիրվել և մի կտոր հաց ուտել։

**ԳՈՒԳԱՐՔՈՒՄ** Ամանորը դիմավորում էին բոլոր ջրաղացները աշխատեցնելով։

**ԱՐԱՐԱՏՈՒՄ** համոզված էին, որ Նոր տարին ձյունափայլ լավաշի խուրձերը ուսին իջնում է Մասիսի կատարից և հաց բաշխում նախ աշխատավորներին, հետո միայն մնացածը տալիս հարուստ ծույլերին և ծույլ աղքատներին։



ԲԱԲԱ ԿՈՌՆԵԼԻՈՒ (ԾՆՎ. 1906 Թ.) «ԻՆՔՆԱՆԿԱՐ», 1971 Թ.
ԱԶԳԱՅԻՆ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ, ԲՈՒԽԱՐԵՍՏ

ԼԵՎՈՆ ԱՍՅԱՆ

ԻՆԴԵՔՍ՝ 77806
ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.

# Նոր տարվա շեմին

Նոր տարվա շեմին այնպես է թվում,
Թե գլխապտույտ հաջողություններ
Պիտի որ թափվեն անձրևի նման,
Թե հրաշքները, հեղեղներ կազմած,
Պիտի լեռներից ներքև սլանան.
Թե այգիներում, ժայռերի վրա,
սարալանջերին աստղեր կծաղկեն
և լեզու կառնի ամեն թուփ ու քար:
Թե կախարդական մի գավազանի
անտես հարվածով
մարդիկ կդառնան
առավել բարի, անչար, սրտացավ...
Պետությունները ջանասիրությամբ
Իրենց ստեղծածն
ի սպաս կդնեն բարիքի, լույսի,
Եվ պահակության աշտարակներում
Արագիլը իր բույնը կհյուսի:



Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ. ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:
Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶՅԱՆ Վ.: